

# ԷՋԵՐ ՓԱՌԱՏՈՆԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ

1945 թվականի նոյեմբերին հինգ մայր ցամաքների երիտասարդության ներկայացուցիչների Լոնդոնյան համաշխարհային կոնֆերանսում ստեղծվեց դեմոկրատական երիտասարդության համաշխարհային ֆեդերացիան, որը և համարվեց փառատոնային շարժման ծնունդը: Ֆեդերացիան վճռեց 1947 թվականի ամռանը Պրագայում անցկացնել երիտասարդների և ուսանողների համաշխարհային առաջին փառատոնը:

Փառատոնի պատգամավորները մասնակցեցին ֆաշիստների կողմից այրված Լիդիցե գյուղի վերականգնմանը:

Երկու տարի անց երիտասարդության և ուսանողների երկրորդ փառատոնը կայացավ Բուդապեշտում, որին մասնակցում էին 82 երկրների քսան հազար երիտասարդ:

Իսկ 1951 թվականին Բեռլինում կայացած համաշխարհային երրորդ փառատոնին առաջին անգամ մասնակցեցին Չիլիի, Ճապոնիայի, Տայլանդի երիտասարդության պատվիրակները:

1953 թվականի ամռանը համաշխարհային չորրորդ փառատոնին մասնակցելու համար Բուխարեստ էին եկել 111 երկրների 30 հազար պատվիրակներ:



# Պարահանդես

ԳՐԻԳՈՐ ՄԱՋՄԱՆՅԱՆ

Ծառին, թփին հովն է փարվում,
Շոյում նիրհող ծաղիկներին,
Խարույկն է մեր բոցավառվում,
Կանչում իր քույր աստղիկներին:

Նրա շուրջը՝ ծափ ու ծիծաղ...
«Ծաղկեփունջ» է Սեդան պարում,
Գետը երգում է քաղցրաձայն,
Ու անտառն է ծափահարում:

Հիմա էլ նոր պարեղանակ.
Մեր հյուրերն են շրջան մտնում,
Թավ անտառի բացատում լայն՝
Իրենց պարի ռիթմը բերում:

Ծափ են տալիս թուփ ու տերև,
Սարի անուշ հովն է երգում...



# Բ Ե Ր Ն Ա

ԱՆՆԱ ՄԱՐԻԱ ՄԱՏՈՒՏԵ

Տանը՝ պապիկից ու բոլոր մեծերից մենք շարունակ լսում էինք, որ Բեռնարդինոն երես տված տղա է:

Բեռնարդինոն ապրում էր իր ավագ քույրերի՝ Էնգրասիայի, Ֆելիսիդադի ու Էրմանիայի հետ «Լոս Լուպուլոս» կոչվող մեծ տանը, շրջապատված վարելահողով ու գեղեցիկ պարտեզով, ուր գետամերձ մասում հինավուրց ծառերը փոքրիկ անտառ էին կազմում: Դաստակերտը, ինչպես և մեր տունը, գյուղից դուրս էր, մեծ անտառի մոտերքում:

Երբեմն պապիկը երկանիվ կառքով մեզ «Լոս Լուպուլոս» էր տանում, և, թեև գետի եզերքով, շագանակենիների ու բարդիների միջով անցնող հինավուրց ճանապարհը գեղեցիկ էր, այդ տան երեկոները մեզ չէին հրապուրում: Բեռնարդինոյի քույրերը բարձրահասակ, ամրակազմ և շատ թխադեմ կանայք էին: Հագնվում էին հնաոճ (պապիկի լուսանկարների ալբոմում մենք տեսել ենք ճիշտ այդպես հագնված կանանց), բլրանձև, շաքարի գլուխ հիշեցնող սանրվածքով: Տարօրինակ էր թվում, որ մեր հասակի տղան կարող է այնպիսի քույրեր ունենալ, որոնց առնվազն կարելի է մորաքույր տեղ դնել: Պապիկը մեզ ասաց.

— Բեռնարդինոյի մայրը նրանց մայրը չէ: Բեռնարդինոն ծնվել է շատ ավելի ուշ, իրենց հոր երկրորդ ամուսնությունից:

Եվ դա մեզ ավելի շփոթեցրեց: Բեռնարդինոն շարունակում էր մեզ համար մնալ մի տարօրինակ էակ, որ նման չէր ոչ մեկին: Երեկոները, երբ մեզ «Լոս Լուպուլոս» էին տանում, ստիպված էինք լինում անհարմար շոր հագնել, համարյա այնպիսի, որով քաղաք էինք գնում և խա–



Հուր-կայծերը թռչում վերև,
Խինդ են փռում տիեզերքում:

Ձայնն է հնչում խմբավարի.
— Եկե՛ք հիմա պարենք նոր պար...
Մայր է առնում մեր «Քոչարին»՝
Եղեգների նման շար-շար:

Նկ. ՍԱՐՈ ԿԱԼԵՆՑԻ

# Ր Դ Ի Ն Ո

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

դալիս էլ պիտի դանդաղ ու հիմար խաղեր խաղայինք, որոնք մեզ ամենևին չէին զվարճացնում: Մեզ թույլ չէին տալիս գետափ իջնել, ծառ բարձրանալ: Այս բոլորը, թվում էր թե, միայն մի բացատրություն ուներ. «Բեռնարդինոն երես տված տղա է»,— ասում էինք ինքներս մեզ: Եվ մանրամասնությունների մեջ չէինք մտնում:

Կլոր գլխով, շեկ մազերով Բեռնարդինոն չափազանց նիհար էր: Նոսր մազափունջը նա ճակատն ի վար էր սանրում, որի տակից գորշ դեղնավուն, անշարժ-դատարկ, կարծես ապակյա աչքեր էին նայում: Գյուղում էր ապրում, բայց գունատ էր, հագնվում էր տարօրինակ: Լռակյաց էր և միշտ քայլում էր չգիտես զարմացա՞ծ, թե՞ անվստահ, և դա անհանգստություն էր առաջացնում մեր մեջ: Հանդիպելիս, թեև հասկանում էինք, որ դա անքաղաքավարություն է, նրա վրա ուշադրություն չդարձնելով, խաղում էինք այն խաղերը, որոնք մեզ էին դուր գալիս:. Իսկ երբ պապիկը դրա համար հանդիմանում էր մեզ, ավագ եղբայրս ասում էր.

— Նա երես տված տղա է... նրա հետ լեզու գտնել հնարավոր չէ:

Իրականում ես չեմ կարծում, թե մենք իսկապես հասկանում էինք «երես տված» բառի նշանակությունը: Համենայն դեպս մեզ չէր գրավում այն կյանքը, որով ապրում էր Բեռնարդինոն: Նա երբեք առանց քույրերի ուղեկցության դուրս չէր գալիս «Լոս Լուպուլոսից». նրանց հետ պատարագի գնալիս կամ նրանց հետ զբոսնելիս միշտ լուռ էր ու լուրջ:

Գյուղի ու հանքափորների ավանի տղաները չէին սիրում նրան: Մի

Համաշխարհային հինգերորդ փառատոնը տեղի ունեցավ 1955 թվականին, Լեհաստանի մայրաքաղաքում: Փառատոնի մասնակիցները կոչ արեցին մեծ տերությունների երիտասարդական կազմակերպություններին՝ իրենց կառավարություններից պահանջել սպառազինումը կրճատելու և ատոմային ռումբը արգելելու պայմանագրեր կնքել:

Մոսկվայում 1957 թ. կայացած վեցերորդ փառատոնը ամենամասսայականն էր: Սովետական Միության մայրաքաղաք էին եկել 131 երկրների 34 հազար երիտասարդներ, որոնք հազարից ավելի՝ ազգային, ուսանողական, արհմիութենական, մարզական, մշակութային և այլ կազմակերպությունների պատվիրակներ էին: Առաջին անգամ Մոսկովյան փառատոնում ստեղծվեց ուսանողական ակումբ:

Յոթերորդ փառատոնը տեղի ունեցավ Ավստրիայի մայրաքաղաք Վիեննայում, 1959 թվականին: Փառատոնային շարժման հակառակորդները նախորդ վեց փառատոների հաջողությունները միշտ վերագրում էին այն բանին, որ դրանք անցկացվել էին սոցիալիստական երկրներում: Եվ ահա կապիտալիստական երկրում առաջին անգամ անցկացված փառատոնը լուրջ հարված հասցրեց նրա հակառակորդներին և մեկ անգամ էլ ապացուցեց, որ փառատոների հաջողությունը տարբեր ժողովուրդների բարեկամության, խաղաղության ու համերաշխության մեջ է:

Ֆինլանդիայի մայրաքաղաք Հելսինկին դարձավ ութերորդ փառատոնի հավաքատեղին: 1962 թվականին կայացած այս փառատոնում առաջին անգամ կազմակերպվեց միջազգային ակումբ, ուր կայացան բանավեճեր, մրցանակաբաշխություններ, համերգներ, ցուցահանդեսներ:

1968 թվականին Սոֆիայում հավաքվեցին 137 երկրների 18 հազար պատանիներ ու աղջիկներ: Իններորդ փառատոնը անցավ «Հանուն վիետնամական ժողովրդի անկախության, ազատության ու խաղաղության հաղթանակի» լոզունգով:

Տասներորդ փառատոնը կայացավ 1973 թվականին ԳԴՀ-ի մայրաքաղաք Բեռլինում: Փառատոնի ինը օրերի ընթացքում 1500 քաղաքական, մշակութային ու մարզական միջոցառումներ անցկացվեցին: Մեծ ուշադրություն դարձվեց Հանոյում մանկական հոսպիտալ կառուցելու համար միջոցներ հավաքելու գործին:

Եվ ահա առաջին անգամ փառատոնն անցնում է օվկիանոսը, հասնում արևմտյան կիսագունդ: Մոլորակի երիտասարդ պատվիրակներին այս տարվա հուլիսին ընդունելու է Հավաննան՝ Ազատության հերոսական կղզու մայրաքաղաքը:



## ՏԱՍՆՄԵԿԵՐՈՐԴ ՓԱՌԱՏՈՆԻ ՄԱՅՐԱՔԱՂԱՔԸ

Հավաննայի պատմությունը դա Կուբայի պատմությունն է, կուբայական ժողովրդի՝ անկախության համար մղած մոտ հարյուրամյա պայքարի պատմությունը:

Փառատոնի մայրաքաղաքը գտնվում է Կուբա կղզու հյուսիսարևմտյան մասում՝ Մեքսիկական ծոցի ափին: Հավաննան Լատինական Ամերիկայի ամենամեծ ու հրաշագեղ քաղաքներից է:

Երկրագնդի երիտասարդության այդ համաժողովին մեծերին հավասար նախապատրաստվել են նաև պիոներներն ու մոնկադիստները (հոկտեմբերիկները):

Կուբայի յուրաքանչյուր պիոներ շատ լավ գիտե Ազատութ-

անգամ կառավարչի որդին՝ Մարիանո Ալբորադոն, գետում մեզ հետ ձուկ բռնելիս ասաց.

— Եկեք այդ Բերնարդինոյի գլխին մի օյին խաղանք:

— Իսկ ի՞նչ օյին,— հարցրեց ավագ եղբայրս, որն ավելի լավ էր հասկանում գյուղական տղաների խոսակցական լեզուն:

— Կտեսնենք,— խնդմնդալով ասաց Մարիանոն,— համոզված եղեք, որ հարմար դեպք կպատահի: Մենք դրան ցույց կտանք: Լուկաս Ամադորը, Գրասիանինը և էլ Բուկեն նույնպես համաձայն են: Իսկ դո՞ւք:

Եղբայրս մինչև ականջակոթերը կարմրեց:

— Չգիտեմ,— ասաց նա,— իսկ դու ի՞նչ ես անելու:

— Դեպքը ցույց կտա,— պատասխանեց Մարիանոն՝ թափ տալով ու քարին խփելով կանեփաթելից հյուսված բաց կոշիկը,— ա՛յ, կտեսնեք, դեպք կպատահի:

Եվ դեպքը պատահեց: Պարզ է, որ այն մեզ հանկարծակիի բերեց և, անկեղծ ասած, մենք չափազանց վախկոտ դուրս եկանք: Մենք չէինք ատում Բերնարդինոյին, բայց չէինք էլ ուզում գյուղի տղաների ընկերակցությունը կորցնել, նաև վախենում էինք մեր արկածների լուրը պապիկի ականջը հասնի: Բացի այդ, գյուղի տղաների հետ գաղտնի խաղերը սարերում ապրելու ամենագրավիչ կողմերից էր:

Բերնարդինոն մի շուն ուներ, անունը՝ Զու: Շունը, երևի, շատ էր սիրում Բերնարդինոյին, շարունակ վազում էր նրա ետևից ու շարժում սպիտակ պոչը: Զուն հավանաբար Զուլո անվան կրճատումն էր: Պապիկն ասում էր, որ շունը ցեղական չէ և ոչ մի արժանիք չունի: Բայց Զուն այնքան խելոք էր ու դուրեկան, որ մենք պապի հետ ոչ մի կերպ չէինք համաձայնում: Զուն մեծ նրբանկատությամբ խաղում էր մեզ հետ ու ստիպում սիրել իրեն:

— Այդ Բերնարդինոն ձկան է նման,— ասում էր եղբայրս:— Նա երբեք չի փաղաքշում Զուին: Չգիտեմ ինչո՞ւ է Զուն սիրում նրան: Ա՛յ, եթե Զուն իմը լինե՛ր...

Մենք բոլորս պաշտում էինք Զուին, և, խոստովանում եմ, որ մի անգամ, դուրս գալով «Լոս Լուպոլոսից», դիտավորյալ փորձեցինք խմորեղենի ու շաքարի կտորտանքով գրավել նրան, որպեսզի տեսնենք, կգա՞, արդյոք, մեր ետևից: Բայց ոչ. վերջին պահին նա մեզ լքեց ու դեպի իր անվրդով բարեկամը դիմեց, որը ապակենման դեղին աչքերը հառած, հանգիստ սպասում էր նրան:

Մի անգամ երեկոյան, երբ պապիկը մեզ «Լոս Լուպոլոս» բերեց, տեսանք արտակարգ անհանգիստ Բերնարդինոյին:

— Չեմ գտնում Զուին,— ասաց նա,— կորե՞լ է, թե՞ գողացել են: Առավոտից երեկո փնտրում եմ ու չեմ գտնում:

— Քույրերդ գիտե՞ն,— հարցրինք մենք:

— Ո՛չ,— պատասխանեց,— ես չեմ ուզում նրանք իմանան...— և թեթևակի շիկնեց: Եղբորս այս լուրը կարծես ավելի հուզեց, քան շան տիրոջը:

— Գնանք փնտրելու,— կանչեց նա,— արի մեր ետևից և կտեսնես, որ կգտնենք նրան:

— Ո՞ւր,— հարցրեց Բերնարդինոն:— Ես արդեն նայել եմ ողջ տունը:

— Պարսպից այն կողմ,— պատասխանեց եղբայրս,— դու կգնաս արտաքին պատի երկայնքով, և այդպիսով մենք կհսկենք գետի մոտ... Հետո կարող ենք գնալ դեպի անտառ... Վերջիվերջո կգտնենք նրան: Մի տեղ պետք է որ նա լինի:



Բեռնարդինոն մի ակնթարթ տատանվեց: Նրան մեկընդմիշտ արգելել էին «Լոս Լուպուլոսի» պարսպից դուրս գալ, և նա երբեք չէր խախտել այդ արգելքը: Սակայն այս դեպքում նա գլխով արեց: Մենք թաքնվեցինք բարդիների անտառակի եզրին, որտեղ պատն ավելի ցածր էր: Բեռնարդինոն ստիպված եղավ ցատկել պատի այն կողմը, և մենք նրան օգնեցինք, և այդ, ինչպես ինձ թվաց, մի թեթև դիպավ նրա հպարտությանը: Մենք վազեցինք թմբի եզրով, հետո իջանք դեպի գետը: Մենք շարունակ կանչում էինք Զուին, իսկ Բեռնարդինոն երբեմն սուլելով, հետևում էր մեզ: Շանը չգտանք:

Հուսահատությունից ընկճված, արդեն վերադառնում էինք, երբ անտառի արահետից մեկը ձայնեց մեզ.

— Հե՜յ, զորախո՜ւմբ...

Նայեցինք և տեսանք Մարիանո Ալբուրադոյին: Նրա ետևում կանգնած էին Բուկեն ու Գրասիաները: Յուրաքանչյուրի ձեռքին եղեգնի մի ճիպոտ կար, և նրանք մի տեսակ առեղծվածային ժպտում էին, այդպես ժպտում էին նրանք միայն այն ժամանակ, երբ մտադրվում էին մի վատ բան անել:

Եղբայրս հարցրեց.

— Դուք Զուին տեսե՞լ եք:

Մարիանոն գլխով արեց:

— Այո՛, տեսել ենք: Ե՞տ եք գնում:

Այստեղ Բեռնարդինոն մի քայլ առաջ գնաց:

— Ո՞ւր է Զուն,— հարցրեց նա: Նրա ձայնը հաստատուն ու հստակ էր հնչում: Մարիանոն ու մյուսները արագ վազեցին ճանապարհի երկայնքով: Մենք վազեցինք նրանց ետևից: Առջևում ինքը Բեռնարդինոն էր:

Իսկապես, Զուն նրանց մոտ էր: Արդեն անտառի ծայրին մենք տեսանք խարույկից ելնող ծուխը, և մեր սրտերն սկսեցին ավելի արագ բաբախել: Նրանք կապել էին Զուի ետևի ոտքերն ու պարանե օղակով ձգել վիզը: Մենք ողջ մարմնով դողում էինք: Բեռնարդինոն սառեց տեղում: Զուն սկսեց տրտմագին ոռնալ: Բայց «Լոս Լուպուլոսում» նրա ձայնը չէր լսվում: Նրանք լավ տեղ էին ընտրել:

— Բեռնարդի՛նո, ահա՛ Զուն,— ասաց Մարիանոն,— հիմա մենք նրան ցույց կտանք:

յան կղզու ամենաբարձր կետը՝ Տուրկինո պիկը: Նրա բարձրությունը ծովի մակերևույթից 1974 մետր է: Այստեղ է հնչել Ֆիդել Կաստրոյի համախմբող ձայնը, այստեղ է բաբախել հեղափոխության սիրտը: Ահա թե ինչու Տուրկինոն պիոներների սրբավայրն է համարվում: Նրա գագաթին կանգնած է Կուբայի ազգային հերոս Խոսե Մարտիի հուշարձանը, որի անունով է կոչվում ավելի քան երկու միլիոնանոց պիոներական կազմակերպությունը: Հուշարձանի մոտ նկարվելու պատվին արժանանում են լավագույններից լավագույնները: Ով իրավունք է ստանում հինգ անգամ բարձրանալ Տուրկինոյի գագաթը, պարգևատրվում է «Հինգ գագաթ» կրծքանշանով: Ամեն տարի լեռնագագաթ բարձրացողները հարգում են զոհվածների հիշատակը և երդում են տալիս պատվով շարունակել նրանց սկսած գործը:

Կուբայի պիոներներն ունեն իրենց փոքրիկ քաղաք-ճամբարը, որը Հավանայից 25 կմ. հեռավորության վրա է գտնվում: Այստեղ՝ մշտադալար արմավենիների միջև կառուցվել են դպրոցի, պոլիկլինիկայի շենքեր, ննջարաններ, ջրավազան, խաղահրապարակներ: Կուբայի պիոներիայի տասնյոթամյա պատմության և հատկապես պիոներական ճամբարի պատմության մեջ այս ամառը անմոռաց կմնա: Ճամբար-ավանը դառնալու է փառատոնի մանկական ծրագրի մայրաքաղաքը:

Երիտասարդների և ուսանողների համաշխարհային տասներկուերորդ փառատոնի մայրաքաղաքը տոնական տեսք է ստացել այս օրերին: Լայնահուն մայրուղիները, փողոցներն ու խաչմերուկները զարդարված են ողջույնի, բարեկամության ջերմ խոսքեր կրող պաստառներով ու վահանակներով: Փառատոնի մարտական կոչն է. «Հանուն հակաիմպերիալիստական համերաշխության, խաղաղության ու բարեկամության»:

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

# ՆԿԱՐԻՉ ԱՂՋԻԿԸ

*(Բ. Ճշտապանովից)*

Ասում են, թե ամեն ինչ՝
Հող ու ծաղիկ,
Գետ ու լիճ,
Մոլորակներ ու արև
Նա կարող է նկարել...
Ե՛վ տեսածն է նկարում,
Ե՛վ լսածն է նկարում...
Գետը՝ ափով ու հունով,
Օդը՝ բույրով ու գույնով,
Նկարում է, նկարո՜ւմ...
Ակնոցի տակ տատիկի
Իր աչքերը նկարեց,
Նա իր քնած հայրիկի
Մորուքի մեջ ի՜նչ արեց.
Քնած առյուծ նկարեց...
Ճաղատ գլխին պապիկի
Նա նկարեց մի փունջ մազ,
Լամպի վրա իրենց տան
Քուն նկարեց ու երազ...
Նկարո՜ւմ է, նկարո՜ւմ
Այս աղջիկը ամեն օր
Անգամ ձայնը առվակի
Նկարում է գունավոր...
Զարմանալի նկարիչ,
Նկարում է ամեն ինչ:
Եվ ասում է՝ լուսավոր
Այն աստղերը մայրիկիս
Տաք աչքերն են ինձ թվում,
Արեգակը ժպտացող
Լույսի ծով է մանկական,
Իսկ ամպերը ձեր դեմքի
Կնճիռներ են ինձ թվում,
Հեռնում է օդը միշտ,
Երբ երկինքն է անձրևում...
Երբ քնում է նա հանգիստ,
Այցելում է աղջկան
Ոսկեփետուր հավքերի
Ոսկեփետուր մի երամ,
Եվ այդ պահին,
Այդ պահին,
Նա լուսեղեն է դառնում,
Գույների մեջ աշխարհի
Սավառնո՜ւմ է, սավառնո՜ւմ:
Իսկ երբ աչքերն է բացում,
Առավոտ է լինում զով.
Արար աշխարհն է տեսնում
Լցված կապույտ երազով:

Բերնարդինոն քարացած էր, շարունակում էր լուռ մնալ: Այն ժամանակ եղբայրս մոտեցավ Մարիանոյին:

— Արձակի՛ր շանը,— ասաց նա:— Արձակի՛ր, թե չէ...

— Հանգստացի՛ր,— ասաց Մարիանոն ու մտրակի պես թափահարեց եղեգնի ճիպոտը:— Եվ թող ձեզնից ոչ մեկը չհամարձակվի խառնըվել: Միայն մի խոսք, և ես կպատմեմ ձեր պապին, թե ինչպես էիք դուք մտնում սև Մանուելի պարտեզը:

Եղբայրս շիկնելով ետ նահանջեց: Ես էլ զգացի, թե ինչպես եմ հուզմունքից շնչահեղձ լինում, բայց կծեցի շրթունքներս: Փոքր եղբայրըս սկսեց կրծոտել եղունգները:

— Եթե դու մեզ այնպիսի մի բան տաս, որ մենք հավանենք,— ասաց Մարիանոն,— մենք կվերադարձնենք քեզ Զուին:

— Ի՞նչ եք ուզում,— հարցրեց Բերնարդինոն: Նա կանգնած էր առջևում, գլուխը բարձր պահած, կարծես վախի ոչ մի զգացում չունենալով: Մենք զարմանքով նրան էինք նայում: Վախ չկար նրա ձայնի մեջ:

Մարիանոն ու Բուկեն նենգ հայացքներ փոխանակեցին:

— Փո՛ղ,— ասաց Բուկեն:

Բերնարդինոն պատասխանեց.

— Ես փող չունեմ:

Մարիանոն փսփսաց իր ընկերների հետ ու դարձավ նրան.

— Լավ, որևէ արժեքավոր բա՛ն տուր:

Բերնարդինոն մի փոքր մտածեց: Հետո արձակեց բլուզի կոճակն ու վզից հանեց ոսկե մեդալիոնը: Եվ տվեց նրանց:

Մի ակնթարթ Մարիանոն և բոլոր մյուսները զարմանքից քարացան, հետո վերցրին այն ու սկսեցին ուշադիր զննել:

— Սա չի լինի,— ասաց Մարիանոն,— սա կտեսնեն մեզ մոտ և... դու սարսափելի տղուն ես: Հասկանո՞ւմ ես: Սարսափելի տղուն:

Հանկարծ տղաները չարացան: Բայց չարացած էլ նրանք շարունակում էին փսփսալ: Ես տեսա, որ Մարիանոյի ճակատի երակն ուռավ ճիշտ այնպես, ինչպես նրա հոր ճակատն էր ուռչում, երբ որևէ զանցանքի համար փայտով ծեծում էր մարդկանց:

— Քո փողերը մեզ պետք չեն,— ասաց Մարիանոն,— քեզ թող մընան քո փողերն էլ, քո բոլոր... Դու ոչ մի բանի ընդունակ չես:

Բերնարդինոն շարունակում էր լուռ մնալ: Մարիանոն նրա երեսին շպրտեց մեդալիոնը: Նրա զայրույթով լի փայլատակող աչքերը սևեռուն Բերնարդինոյին էին նայում: Ի վերջո նա ասաց.

— Եթե դու համաձայնես, որ քեզ ծեծեն Զուի փոխարեն...

Բոլորը վախով Բերնարդինոյին էին նայում:

— Ո՛չ...— ասաց իմ կրտսեր եղբայրը: Բայց Մարիանոն՝ գոռաց.

— Հապա, դուք լռե՛ք, թե չէ... Ձեզնից ո՞վ կհանդգնի, ո՞վ:

Մենք վախկոտներ դուրս եկանք: Երեքով կիպ կպանք կաղնու ծառին: Ես զգացի, թե ինչպես ափերս սառը քրտինքով պատվեցին: Բայց Բերնարդինոյի դեմքի արտահայտությունը չէր փոխվում («Զուկ».— ինչպես ասում էր եղբայրս): Նա պատասխանեց.

— Լավ, ի՛նձ ծեծեք:

Մարիանոն աչքի տակով նրան նայեց և մի ակնթարթ, ինչպես մեզ թվաց, վախեցավ: Բայց իսկույն էլ գոռաց.

— Օլա՜, Բուկե:

Նրանք վրա ընկան Բերնարդինոյին ու հանեցին բլուզը: Բերնարդինոյի մաշկը բաց դեղնավուն էր և կողերը բոլոր կողմերից ցցված: Նա շարունակում էր հանգիստ ու անտարբեր մնալ: Բուկեն նրա ձեռքերը մեջքին սեղմեց, իսկ Մարիանոն ասաց.

— Կո՛ւ ակսիր, Կրասիա՛ննին…

Կրասիաններն եղեգնի նիպոտը գետին նետեց ու փախավ, և դրանից Մարիանոն ավելի չարացավ. կատաղած, նիպոտը բարձրացրեց ու բռնկրսեց զարկել Բերնարդինոյին, և զարկեց այնքան, մինչև որ հոգնեց:

Ամեն հարվածի հետ ինձ ու ավագ եղբորս ավելի ու ավելի էր համակում ամոթը: Մենք լսում էինք Չուի ոռնոցը և տեսնում էինք նրա կարեկցանքով ու ցավով լի, կեռասի պես կլոր աչքերը, որոնք էլ ավելի էին խտացնում մեր տառապանքը: Իսկ Բերնարդինոն, թվում էր, թե բնդհակառակը, ոչ մի ցավ չի զգում: Անշարժ կիսաժպիտը դեմքին, նա շարունակում էր հանգիստ կանգնել, միայն ցնցվելով հարվածներից: Եվ նրա աչքերն էլ նույնքան անտարբեր էին: (Այդ «ձուկը» այդ «հրճդկահավը»,— հնչում էր իմ ականջներում):

Մարիանոն, տեսնելով արյան դուրս ցայտած առաջին կաթիլը, բարձրացրած նիպոտը ձեռքին քարացավ: Հետո մենք տեսանք, թե նա որքան խիստ գունատվեց: Բուկեն, բաց թողնելով ամենաչնչին դիմադրություն անգամ չցուցաբերող Բերնարդինոյի ձեռքերը, կայծակի պես նետվեց զառիթափն ի վար:

Մարիանոն չէշտակի նայեց Բերնարդինոյին:

— Խո՛զ,— գոռաց նա,— խո՛զ:

Կազազած շպրտելով նիպոտը, նա փախավ ավելի արագ, քան ինքն էր ուզում:

Բերնարդինոն մոտեցավ Չուին: Թեև նիպոտի հետքերը այրում էին նրա մեջքը, թևերն ու կուրծքը, ինքը՝ Բերնարդինոն, ինչպես թվացել էր միշտ, հանգիստ էր. անկախ ու հպարտ: Նա դանդաղ արձակեց Չուին, և Չուն նետվեց լիզելու տիրոջ դեմքը այնպիսի ոռնոցով, որ մարդու սիրտ էր նմլվում: Հետո Բերնարդինոն մեզ նայեց: Ես երբեք չեմ մոռանա, թե անմատչելի արժանապատվության ինչ զգացում էր առկայծում նրա մեղրագույն աչքերում: Չուի ուղեկցությամբ, որը շարունակում էր հաչել ու թռչկոտել, նա դանդաղ հեռացավ արահետով: Նա նույնիսկ չվերցրեց գետնից իր մեդալիոնը: Գնում էր ինչպես միշտ խաղաղ ու հանգիստ:

Միայն նրա անհետանալուց հետո մենք համարձակվեցինք խոսել: Եղբայրս վերցրեց գետնից փայլուն մեդալիոնը:

— Տանենք իրեն տանք,— ասաց նա:

Որքան էլ որ մենք ուզում էինք նրա հետ հանդիպման րոպեն հեռացնել, միևնույն է ստիպված էինք վերադառնալ «Լոս Լուպուլոս»:

Մենք արդեն մոտեցել էինք պարսպին, երբ ինչ-որ խշխշոց բռնտիպեց մեզ քարանալ: Ավագ եղբայրս գնաց դեպի կանաչ գետաեղեգնուտը: Աշխատելով չաղմկել, մենք գնացինք նրա ետևից:

Կիսով չափ եղեգնուտում թաքնված, փորին պառկած ու աղեկտուր հեկեկալով, Բերնարդինոն գրկել էր շանը:

*Թարգմ.՝ ԼԻԼԻ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ*



*ԴԻԱՆԱ ՌԻԿԼԵՐԱ*

## ՃՆՃՂՈՒԿՆԵՐԻ ԽՆԴՐԱՆՔԸ

Դուք ինչո՞ւ եք պարսատիկով
Մեզ հալածում, երեխանե՛ր,
Մենք և՛ փոքրիկ ենք ձեզանից
Ու ձեզանից թույլ ենք նաև:

Ձեր ձեռքերում ինչո՞ւ փակենք
Մեր աչքերը կոճակ-կոճակ,
Երբ կարող ենք ուրախ ճախրել
Քամու թևին, անձրևի տակ:

Մի՛ հալածեք թռչուններիս,
Թողեք ապրենք խաղաղ կյանքով,
Որ ունենաք դուք երկնքից
Ձեր երգերին արձագանքող:

## ԾԱՂԿՈՒՆՔԻ ԿՈՏՈՐԱԾ

Թամբել են ձիերը փայտե,
Թռչում են, սլանում առաջ,
Կանչում են՝ գալիս ենք արդեն,
Անվախ ենք, խիզախ ենք ու քաջ:

Գնում են, վազում են, երգում
Ու դաշտից երբ տուն են գալիս,
Դաշտում կակաչները են տրորում,
Կապույտ նարգիզները լալիս:

—Թռչնո՞ւմ ենք,— կանչում են
ցավով
Ծուշանները սպիտակ ու վառ,—
Ինչո՞ւ եք, մանուկնե՛ր անհոգ,
Պոկոտում մեզ թփից մեր մայր:

Ծաղկունքի հառաչը սակայն
Չի հասնում ականջին նրանց,
Վազում են, երգում են ուրախ,
Կոխկրտում մարգերը կանաչ:
Երկինքն է լոկ տեսնում պոկված
Ծաղկունքի վերքերը ցածում
Եվ ամեն առավոտ նրանց
Իր բուժիչ շաղերով օծում:

*Թարգմ. ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*



# Ջ Ր Ի  Գ Ո Ղ Ը

ՖԵԼԻՔՍ ՇԱՔԱՐՅԱՆ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Այգիները տանող ճանապարհը ինձ ծանոթ էր մինչև ձորաշուրթը, որին մեզանում ասում են Քարի գլուխ: Այստեղից նեղլիկ կածանով ես իջա Դեքենդի ձորը: Վերևում մնաց Ծաղկավանքը, իր ընկած գմբեթով ու խարխուլ պատերով: Թախծոտ դեմք ուներ պատմական այդ հուշարձանը: Արահետով մի քիչ էլ իջա. այն ճյուղավորվեց և մի թել մագլցեց դեպի Արջի քարայրը: Մերերից լսել էի, որ այդտեղ ձմեռն արջը քուն է մտնում: Բարձրացա կածանով, երկար նայեցի քարայրի մութ երախին և ետ դարձա, շարունակեցի իջնել ցած, դեպի այգիները, ուր երկինք էին մխրճվել փառահեղ ընկուզենիները, բարձրահասակ թթենիները և մոմերի պես ձիգ բարդիները: Ավելի հեռվում կեռմաններով ձըգվում էր գետի կապույտ ժապավենը: Եվ պարզ լըսվում էր դարավոր գետի մտազբաղ վշշոցը:

Քարից քար թռչելով, քարքարոտ կածանով հասա Զորավարի աղբյուրը: Այդքան վարար աղբյուր մեկ ուրիշ տեղ չես տեսնի: Հապա շուրջն անած փարթամ բուսականությո՜ւնը: Մոշի ինչպիսի՜ թըփեր, ծառավազերը թափված քարերի վրայով մագլցել հասել են պղնձագույն ժայռերին: Այդ ընդարձակ, քարքարոտ, թեք տարածության վրա հազար ու մի տեղից ջուր է բխում սառնորակ, վճիտ և քաղցրահամ: Այդ ջրերը Սանդրո հորեղբայրը հավաքել էր մի ընդհանուր առվի մեջ, դուրս բերել մոշուտից, իջեցրել փոքր-ինչ ցած և, մի հարմար դիրքից բաժան-բաժան անելով, հասցրել տարբեր այգիների:

Համայված շուրջս էի նայում, երբ թփերի խորքում ինչ-որ բան շարժվեց:

Տեղումս քարացա:

— Հե՜յ, ո՞վ կա այդտեղ,— վախից գոռացի ես:

Թփերը աղմուկով ետ գնացին, առանց մարդահասակ խոտերի միջով հենձվոր անցավ. ետևի ոտքերի վրա կանգնեց բրդոտ ապերը: Բարկացած նայեց ինձ... Ես շուռ եկա և գլխապատառ փախա, չգիտեմ, թե ինչպես կածանն ինձ հասցրեց այգեգործների պահեստը: Պահեստապետը զարմացած նայեց ինձ: Նա մի կտոր տանձենու փայտից շերեփ էր սարքում: Ճանաչեց ինձ: Շտապ մի բաժակ ջուր բերեց և ասես հրամայեց.

— Խմի՛ր, խմի՛ր, վախեցած ես երևում:

Խմեցի, և թվաց, սկսեցի հանգիստ շնչել:

— Ի՞նչ է պատահել,— իր սովորական ծուռ ժպիտով հարցրեց նա:

— Արջը ընկավ ետևիցս...— պատասխանեցի՝ ձեռքս նորից ջրի բաժակին մեկնելով:

— Փիղ կլիներ:

— Արջ էր...— կրկնեցի:

Նա սկսեց անողոք ծիծաղել և փորձեց հիշել, մեր տոհմում վախկոտ մարդ եղե՞լ է, որ ինձ համեմատի նրա հետ: Չգտավ, բայց ծիծաղն էլ չկտրեց:

— Դե, հորեղբա՛յր Սարգիս, որ չես հավատում,— ասացի,— արձակիր զույգ շներիդ և գնանք Զորավարի աղբյուրի կողմը:

Նա ծիծաղի միջից ասաց.

— Խելո՞ք ջան, բա էս շերեփն ո՞վ սարքի:

Հանկարծ հեռվից տարածվեց հորեղբայր Սանդրոյի բասը.

— Հե՜յ, Մեխա՛կ, դու մոտիկ ես, հլա տես ջուրն ո՞վ գողացավ:

— Իմ ջուրն էլ են կտրել...— մյուս ծայրից լսվեց Մեխակի պատասխան կանչը:

Պահեստապետը քթի տակ դժգոհեց.

— Հա՛, բան ու գործ չունեն՝ գնան ձեր ջուրը կտրեն:

— Կարող է մեկը կատակ է արել՝ կտրել է,— միջամտեցի ես:

— Հա, բան ու գործը հատե՞լ է... Որ ուրիշ գործ

չունենա, կնստի ու ինձ պես շերեփ, գդալ, կացնի կոթ կսարքի,— ծիծաղեց պահեստապետը:

Քիչ հետո հորեղբայր Սանդրոն մոտեցավ մեզ, և պահեստապետն ասաց.

— Էս երեխան արջ է տեսել... Հլա հարցրո՛ւ, ի՞նչ բանի էր էն գազանը:

— Մոշ էր ուտում, բուռ-բուռ մոշ էր ուտում...— ասացի:

— Ի՞նչ... ի՞նչ...— դիտավորյալ կրկնեց պահեստապետը:

— Դունչը մոշոտ էր, մոշ էր ուտում...— ծիծաղեցի:՝Վախս անցնում էր:

— Բա դու ի՞նչ արեցիր,— հարցրեց հորեղբայր Սանդրոն:

Պահեստապետը քմծիծաղեց.

— Լեղապատառ փախել է...

Հորեղբայր Սանդրոն նեղսրտեց.

— Չէ՛, էդ չեմ հարցնում... Ապերն եկավ խնըճվե՞ց ծառավազերի մեջ:

— Ու սայթաքեց...— ասացի:

— Նույն տեղո՞ւմ էլ բարձրացավ:

— Ո՛չ, ավելի ցած,— պատասխանեցի:— Էլ ուրիշ բան չտեսա. փախա,— ասացի:

Հորեղբայր Սանդրոն ուրախ ծիծաղեց ու դարձավ պահեստապետին:

— Բա, որ ասում էի, ա՛յ Սարգիս... Ախր, էդ ծառավազի տակ մի տեղ են հավաքվում բոլոր աղբյուրների ջրերը և փոխում հին հունը: Ջրերի ուղղությունը մի քար է փոխում, որ երկաթյա շղթայով կապված է ծառավազից: Հենց արջը դիպչում է...— հորեղբայր Սանդրոն ուրախ ծիծաղում էր:

Զարմացած նրա առջև կանգնեց պահեստապետը:

— Արջը հո խելք չունի՞...

— Ունի, ունի, ունի...— քրքջում էր հորեղբայր Սանդրոն:

— Գրազ գանք,— ասաց պահեստապետը:

— Գանք,— համաձայնեց հորեղբայր Սանդրոն:

— Ինչի՞ վրա:

— Էսօրվա քո սարքած շերեփների ու գդալների վրա:

— Բա որ տարվե՞ս:

— Դրանք քեզ կմնան:

— Տարվելու ես, ա՛յ Սարգիս,— միջամտեց խոսակցությանը վրա հասած այգեպան Մեխակը:— Ջրի գողն արջն է, էդ գազանը իր կամքից անկախ... Բայց ոչինչ, ոչինչ, պայմանավորվեք, շները վերցրած գնացեք Զորավարի աղբյուր, առուները սարքեք և առավոտ լուսին էլ կարողանաք՝ կբռնեք ջրի գողին...

Ես չէի կասկածում, որ հենց այդպես էլ լինելու է:

## ԲՆԱՆԿԱՐ

*ԳՈՒՐԳԵՆ ԲԱՐԱՅԱՆ*

Անքուն գետակ,
Լացող ջրվեժ,
Խոր անդունդ,
Ճաքած քարի
Ճեղքում պահված
Ծաղկի հունդ:

Բարձր սարեր,
Արևի շող
Քարի ունքին,
Խռիվ-խռիվ
Ամպեր՝ սարի
Թիկունքին:

Փախած քամի՝
Գլխին մի քիչ ամպ բռնած,
Վազվզում է՝
Սարի ուսին շվարած...

## ԱՐԵՎԸ

*ԱՐՄԵՆ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ*

Բաց են դռները փոքրիկ լճակի,
և արեգակը առանց թակելու
լճակն է մտնում
ու լողանում է:
Եվ այժմ արևն ունի երկու տուն,
և մայրամուտին
երկնքի տնից տեղափոխվում է:
— Ոսկե ձկնիկ է լճակը ընկել,—
ասում է փոքրիկ ձկնորսն ինքն իրեն,
և ոսկե կարթ է նետում լճի մեջ,
և ոսկե ձուկ է կարթի մեջ ընկնում,
և արդեն արևն ունի երեք տուն՝
մեկը՝ երկնքում,
մեկը՝ լճակում,
մեկն էլ ձկնորսի այտերի վրա:
— Սա իմ տոնական զգեստն է դեղին,—
ասում է ~~փոքրիկ~~ Արփին արևին,
և արեգակ է լճակում հունցում,
և լվանում է,
և արեգակ է փռում պարանին:
Պարզապես Արփին մաքրասեր է շատ,
և օրը տոն է թվում պարզապես,
քանի որ անա
արևը չորրորդ իր տունն է գտնում
աղջկա փոքրիկ, փոքրիկ ձեռքերում:

*ՄԱՐԳՈ ՂՈՒԿԱՍՅԱՆ*

# 4. ՏԽՈՒՐ ՀՈՎԻՏԸ ԵՎ ՈՒՐԱԽ ԲԼՈՒՐԸ

Պատահեց այնպես, որ տուրիստական մեր խումբը նույն օրվա առավոտյան չափազանց տխուր պատկերի ականատես եղավ, իսկ երեկոյան՝ արտակարգ ուրախ իրադարձության:

Գնում ենք տեսնելու Էսպո քաղաքի Տապիոլա միկրոշրջանը: Գեղեցիկ ճանապարհ է. կամուրջներ, լճեր, անտառ, կանաչ հովիտներ: 17 հազար բնակչի համար կառուցված բնակավայրի հեղինակները նշանավոր ֆինն ճարտարապետներն են՝ Էրվի, Պիետիլե, Պետայա, Սիրեն ամուսիններ, Ֆոն Հերցեն... Տապիոլայի կենտրոնում 13 հարկանի մի տուն է. վերելակով բարձրանում ենք տանիքում կառուցված դիտակետ-պատշգամբը: Ամբողջ շրջանը տեսանելի է ինչպես ափի մեջ դրված մանրաքանդակ: Վերևից պարզորոշ երևում էին շենքերը, ջրավազանները, ստադիոնը, ավտոկայանը: Այն ամենը, ինչ անհրաժեշտ է բնակավայրը հարմարավետ անվանելու համար: Ապա և Ֆիննական ծոցին ներհյուսված կանաչ կղզիները՝ մանր, խոշոր: 13-րդ հարկի մեր դիտակետից աքանչելի մի տեսարան էր այդ: Հեռադիտակը, որ հատուկ դրված էր տեսադաշտը մեծացնելու համար, օգնում էր դիտելու հեռու-հեռուն, կմայլվելու լազուր երկնքով և կապույտ ջրերով: Ահա բուն Ֆինլանդիան: Ահա լճերի երկիրը:

Այդ պատշգամբում մեծ տակառների մեջ եղևնիներ էին աճում և, ինչպես որ ծաղկամաններում (նշանակություն չունի, թե որտեղ են դրված), մոլախոտեր են աճում, այստեղ ևս պարարտ հող էին գտել ավելուկն ու ջրակոտեմը: Այդ ամենը աքանչելի էր, բայց հովիտը, որի կողքով քիչ առաջ անցավ ավտոբուսը...



Մեր ուշադրությունը գրավեց ստադիոն հիշեցնող մի տարածություն, որտեղ այս ու այն կողմ գետնատարած մարդիկ էին:

— Ալկոհոլիկներն են,— ասաց գիդը,— ծայր անկման են հասել: Սեփական ընտանիքի անդամները նույնիսկ երես են դարձրել դրանցից:

Պատկերն այնքան անախորժ էր և ցնցող, որ երկար ժամանակ հետապնդում էր մեզ, և նույնիսկ 13-րդ հարկից բացված աքանչելի այդ տեսարանը չէր մեղմում տխուր հովտի թողած տպավորությունը: Բայց չէ՞, որ կյանքն ունի իր օրինաչափությունները. ուրախ պահերին հետևում է տրխուրը և՝ ընդհակառակը:

Երեկոյան վերադարձանք Հելսինկի: Կենտրոնական թաղամասերից մեկում աստիճաններով բարձրացանք բլուրն ի վեր՝ դեպի զվարճության պարտեզ: Ժամը ինն է. արևը դեռ մայր չի մտել (այդ ժամանակ Երևանում գիշեր էր, ժամը մեկը):

Ինչպես որ՝ զվարճության պարտեզ: Այսքան բազմապան խաղե՞ր: Ի՜նչ հնարամիտ մարդիկ են եղել նախագծողները. ամեն քայլափոխի՝ մի նորություն: Սուրում են գնացքները, պտըտվում կարուսելները, հեռուստաէկրանների առաջ նստած պատանիները «որսում» են սահմանը խախտած օդանավերը, էլեկտրոնային լուսատախտակների գույնզգույն վանդակներն անընդհատ՝ առկայծում են: Ո՞ւմ բախտը կբերի: Հրապուրիչ խաղերը՝ արջուկ, տիկնիկ, որ կարելի է շահել մետաղադրամներ կլանող այդ հարմարանքներից, կանչում են ու գայթակղում:

Զվարճալի պարտեզը փռված է բլրի վրա և լեփ-լեցուն է պատանիներով: Ծնողներ համարյա չկան: Ուշադիր դիտողի համար հասկանալի է դառնում, որ այստեղ շատ՝ բան է արված, որպես-

վի երեխաները կոփվեն, ամրանան, ներվերը դիմացկուն դառնան: Երեխաներն այստեղ են եկել ոչ թե տոնական հագուստներով, այլ Ֆինլանդիայում շատ տարածված կապույտ ջինսերով: Կարծես ազգային տարազ լինի ջինսը, որ հագնում են երկու տարեկանից սկսած: Եվ իրոք, ինչո՞ւ պետք է զբոսայգի գային տոնական հագուստներով, երբ ամեն երևակայությունից վեր ատրակցիոն խաղերը ստիպում են երեխաներին վազել, մագլցել, թավալվել, գլուխկոնծի տալ, սայթաքել...

Մետաղադրամով սպասարկվող զվարճալի արկղերն այնքա՜ն շատ են և այնքա՜ն բազմախոստում: Սակայն շահում են քչերը: Եվ նրանք, ում բախտը ժպտում է, երջանիկ դեմքերով գրկած տանում են հսկայական փրչոտ արջուկը կամ տիկնիկը: Իսկ ո՞ւր են գնում մետաղադրամները, որոնք ինչ-որ բան շահելու անհայտ ցանկությամբ հազարավոր պատանիներ ավտոմատների բացվածքներից գցում ու գցում են:

Գիդն ասաց, որ զվարճալի պարտեզի ամբողջ հասույթը տրամադրվում է այն հիվանդանոցին, որտեղ բուժվում են թոքախտավորները: Եվ այն մտածումները, որ պաշարել էին մեկ քիչ առաջ, թե ճի՞շտ է արդյոք, երեխաներին թույլատրել զվարճություններին դրամ խառնել, կարծես գտավ իր արդարացումը:

Երեխաները համոզված էին, որ իրենք մարդասիրական միջոցառման են մասնակցում:

## ՈՒՐ ԼՌՈՒԹՅՈՒՆՆ Է ԽՈՍՈՒՄ ԻՐ ՄԱՍԻՆ

Իսկական մեծերը սեփականությունը չեն այն ժողովրդի, որը ծնել ու փայփայել է նրանց:

Իսկական մեծերը սեփականությունն են համայն մարդկության:



Տարբեր ազգերի ներկայացուցիչներ նրանց մոտ են գնում հիացած հոգով և բաց սրտով, ինչպես կգնային հարգանք մատուցելու սեփական ժողովրդի տաղանդավոր զավակին:

Յան Սիբելիուս: Ֆինլանդիայի հպարտությունը և պաշտամունքը: Աշխարհահռչակ կոմպոզիտոր, որի ստեղծած երաժշտությունը մեր հոգին լցնում է մեղմությամբ ու գորովով, բնության քնքուշ մեղեդիներով: Այսօր մեզ բախտ է վիճակվել այցելության գնալ Յան Սիբելիուսի տուն-թանգարանը:

38 կիլոմետր ավտոբուսով Հելսինկիից մինչև Յարվենպյա, ևս երկու կիլոմետր և հասնում ենք Այնոլա արվարձանին: Կանգնած ենք մի համեստ առանձնատան դիմաց, շրջապատված ծառերով, և նախքան ոտք կդնենք տուն-թանգարանի սահմանը, իմանում ենք հետևյալը.

— Սա արգելավայր է. ծառերը, թփերը, քարերը, ծաղիկները: Այստեղ ամեն ինչ պահպանվում է այնպես, ինչպես եղել է իր տերերի՝ Յան և Այնո Սիբելիուսների ժամանակ:

Մուտքից աջ երկու ցուցանակ կա. մեկի վրա նկարված է գլանակ, մյուսի վրա՝ շուն, երկուսն էլ սև գծերով ջնջված են, որը նշանակում է. խստի՛վ արգելվում է:

Այս առանձնատանը Սիբելիուսն ապրել է հիսուն տարի: 1904 թվականին նա թողել է Հելսինկիի իր բնակարանը և հաստատվել հեռավոր այս գյուղում: Ամենամեծ հարստությունն այստեղ... լռությունն է, անդորրը և անաղարտ բնությունը: Ժամանակ առ ժամանակ ինչող սոսիների ու եղևնիների սոսափյունը: Եվ թռչունների երգը: Եվ բացվելուն սպասող հովտաշուշանի նշտարաձև տերևները, որ տեղ-տեղ հատվում են հավամրգի և կապույտ հապալասի թփերով: Դարավոր մի ժայռաբեկոր՝ մամուռը վրան:

Չհղկված գրանիտի ցոկոլի վրա կանգնած է տունը՝ սպիտակ և կանաչ պատերով: Տան մոտակայքում կոմպոզիտորի ու նրա կնոջ տնկած ծառերն են:

— Ուշադի՛ր նայեք ծառերի բներին,— ասում է գիդը,— յուրաքանչյուրը մի նախշ ունի, մի գծագրություն: Ահա հենց այդ նախշերն է ընդօրինակել քանդակագործ Հելենա՝ Հիլտոնենը, Սիբելիուսին նվիրված հուշարձանը «ձուլելիս»: Նրա «երգեհոնի» յուրաքանչյուր խողովակը կըրկնօրինակ-նկարազարդումներն են այս ծառաբների:

Կանաչ ծիլերը ուժ են գտնում դուրս պրծնելու քարե աստիճանների արանքով, և ինչպիսի՜ խոհեր են ծնվում մեր մեջ, երբ տեսնում ենք դրանք: Սիբելիուսի տան քարե աստիճանների մի ճեղքից մանուշակ է աճել, և ծաղկի քնքուշ գլխիկը ինչքա՜ն զգույշ ոտնաձայների է ունկնդրել:

Հյուրասենյակում մեզ դիմավորում է հեզահամբույր մի կին:

— Ողջո՜ւյն մեծ Սիբելիուսի հարկի տակ,— ասում է նա:—



## ԱՄԵՆԱԴԺՎԱՐԸ

Հռչակավոր դաշնակահար Արթուր Ռուբինշտեյնին հարցրին, թե երբ դաշնամուր նվագել էիք սովորում, ձեզ համար ամենադժվարն ի՞նչն էր:

— Դասերի համար վճարելը,— պատասխանեց նա:



## ՆԱՄԱԿ ԲՈՐԻՆ

Հոլանդացի երիտասարդ ֆիզիկոս Հենրիկ Կազիմիրը մեկնում է Նիլս Բորին աշակերտելու: Կազիմիրի հայրը, որը գիտական աշխարհից հեռու մարդ էր, որոշում է ստուգել, թե իրո՞ք Բորը նշանավոր է, և ուղարկում է որդուն նամակ, հետևյալ հասցեով. «Նիլս Բորին, հանձնել Կազիմիրին, Դանիա»: Նամակը առանց դժվարությունների տեղ է հասնում:

## ԱՅԴ ԴԵՌ ՈՉԻՆՉ

Կոմպոզիտոր Ռիմսկի-Կորսակովին ասացին, որ իր աշակերտներից մեկի երաժշտությունը շատ է նման ձեր սեփական երաժշտությանը: Կոմպոզիտորը պատասխանեց.

— Երբ երաժշտության մասին ասում ես, որ նա ինչ-որ բանի նման է, այդ դեռ ոչինչ: Ա՛յ, եթե երաժշտությունը ոչ մի բանի նման չէ, այդ է վատ:



Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ



Հիմա շատերն են այստեղ գալիս: Սակայն երբ տան տերը ողջ էր, այսքան այցելուներ չկային: Սիբելիուսը գերադասում էր խաղաղությունը, դրա համար մայրաքաղաքից տեղափոխվեց գավառ,— և հետո ամբողջացնելով իր միտքը, նշանակալից շեշտով ասաց.— Լռությունը մեծ պարգև է: Լռությունն իր մասին է խոսում:

Սիբելիուսի հինգ դուստրերը նույնպես չեն խախտել կոմպոզիտորի այնքան արժեքավորած լռությունը: Ճաշի սեղանի շուրջ նրանք չեն աղմկել: Չէ՞ որ հայրիկի գլխում ալիքվում էր երաժշտությունը, և նա երբեմն վեր էր կենում սեղանից ու գնում իր աշխատասենյակը, թղթին հանձնելու մտածածը: Իսկ դաշնամուրի իրենց դասերը պարապելու համար նրանք գնում էին հարևան նկարչի տունը, որը ընտանիքի մտերիմ բարեկամն էր:

Հյուրասենյակի պատին կընոջ դիմանկարն է, Այնո Սիբելիուսի, որի անվամբ կոչվում է տունը և ամբողջ բնակավայրը՝ Այնոլա: Սիբելիուսը խոստովանել է, որ իր ստեղծածի համար պարտական է միայն Այնոյին, որն ապահովել է աշխատելու՝ բոլոր պայմանները:

Դիտում ենք երեսունամյա Սիբելիուսի դիմանկարը, նաև այն նկարները, որ նվիրել են նրա երաժշտության երկրպագու նկարիչները:

Սիբելիուսը երեք անուն է ունեցել. Յոհան, Յուլիուս և Քրիստիան: Քեռին, որ ծովային հրամանատար է եղել, կարմիկյին ուղարկած նամակների վրա գրել է իր նախընտրած անունը՝ Յան: Եվ դա եղել է կոմպոզիտորի չորրորդ անունը: Ի վերջո քեռու կամքը կատարվել է: Կոմպոզիտորը հռչակվել է Յան անունով:

Ռոյալը. Սիբելիուսի 144 ընկերները գնել են իբրև ընծա նրա հիսնամյա հոբելյանին: Սակայն, ինչպես բացատրող տիկինն է հավաստում, Սիբելիուսը քիչ է նվագել այդ գործիքի վրա, որովհետև նրա երաժշտությունը ալիտում էր և... գլխում:

Սեղանատանն ենք. կահույքը փայտից է. առանց սփռոցների և փափուկ ծածկոցների: Եվ դրա համար տան տերերը անվանակոչել են՝ փայտյա սիմֆոնիա:

Պատերից կախված են չորացած դափնեպսակները, որոնք նա ստացել է իր երկրպագուներից:

Ֆ. ԿԱՄԱԼՈՎ

# ՔԱՄԻՆ

Յանկապատի դռնակը ճռռաց:

— Ո՞վ եկավ:

Ոչ ոք:

Հետո լուսամուտը թակեցին:

— Այդ ո՞վ էր:

Ես լուսամուտը բացեցի, այնտեղ առաջվա նման կանգնած էր միայն փոքրիկ բարդին:

— Երևի քամին էր,— ասաց մայրիկը,— թե՞ որևէ մեկը թաքնվել է:

Ես տան շուրջը պտտվեցի: Մարդ չկար:

Ապա լսեցի, թե ինչպես են շաչում էլեկտրալարերը:

Երևի քամին է նվագում նրանց վրա: Եվ թակեց լուսամուտը, որ մեկնումեկը դուրս գա, լսի իր գիշերային նվագը:





# ԱՐԱԳԻԼ

Անտառում գտանք մի սպանված արագիլ: Ո՞ւմ էր խանգարում, ինչո՞ւ էր սպանել ազատ թռչունին:

Քանի՜-քանի կապույտ կիլոմետրեր էին չափել նրա երկար թևերը իրենց կյանքի ընթացքում:

Մենք թաղեցինք ճերմակ արագիլին մորու բացատում և տնկեցինք նրա վրա մի փոքրիկ կեչի:

Թող որ կեչին աճի մեծանա և ամեն ամառ երկնքի մեջ մխրճված նրա գագաթը շաչի-շառաչի, ինչպես որ շաչում-շառաչում էին երկնքում արագիլի կենդանի թևերը:

---

— Կոմպոզիտորի 85-ամյա հոբելյանին նրան շնորհավորելու է եկել Ֆինլանդիայի պրեզիդենտը և բերել է ահա այս պսակը,— ասում է գիդը:

Պատից կախված է գունաթափված քնարաձև դափնեպսակը, որ պրեզիդենտն անձամբ է մատուցել Սիբելիուսին: Ահա և Սիբելիուսի ամենասիրելի նկարը՝ «Կարլոս 12-րդի թաղումը» (նկարիչ՝ Օսկար Պարվիայնե):

— Այս սենյակում նվագել է Կոզանը՝ երաժշտական սքանչելի մի կտոր՝ «Հեքիաթը»:

Ահա և ննջարանը. մահճակալի եպրին գցված է Սիբելիուսի խալաթը՝ սպիտակ մահուդից: Հին բազկաթոռ և մեծ գրասեղան, վրան աշխատանքներ: Իմանում ենք նույնիսկ, թե որոնք են Սիբելիուսի նախընտրած գույները: Զրանը՝ մոխրագույնը, իսկ ամռանը՝ սպիտակը:

Սիբելիուսի ամենասիրելի ըմպանելիքը՝ ականջ դնել բնության ձայնին:

Տան կողքին, խնձորենու և հաղթահասակ սոճու ստվերում, հանգչում է իննսունմեկամյա կոմպոզիտորի աճյունը: Պարզ տապանաքարի չորս բոլոր մի արահետ է գոյացել հարգանք մատուցելու եկած հայրենակիցների և տուրիստների ոտնահետքերից: Անցնում ենք այդ արահետով, ականջ դնելով ծառերի սոսափին, թռչունների երգին և լսում Սիբելիուսի դուստրերի ղալակի կարմունու վերջին բացատրությունները.

— Անու Սիբելիուսն իր կյանքի ուղեկցին միացավ 97-ամյա հասակում: Վայրի սալորենին, որ աճում էր նրանց շիրիմի կողքին, չդիմացավ այդ վշտին: Վայրի սալորենին չորացավ իր տերերին հավերժություն ճանապարհելուց կարճ ժամանակ անց:

Երաժշտության և ոչ մի հնչյուն, բայց մեկ թվում էր, որ Այնոյան լիքն է սքանչելի մի մեղեդիով. և՛ տունը, և՛ պարտեզը, և՛ տապանաքարը եզերող արահետը, և՛ գրանիտի մամռոտ ժայռաբեկորը, և՛ բույրն ամբողջությամբ: Կարծես քնքուշ մի մեղեդու հնչյունների տակ լսեցինք նաև վերջին բառերը.

— Եթե դուք մեկ շաբաթ ուշ գայիք, հովտաշուշանը ծաղկած կլիներ: Այնքան շատ է այստեղ հովտաշուշանը, որ Այնոյան ըստացել է երկրորդ անունը՝ Հովտաշուշանի բլուր:

(Շարունակելի)




ՌԱՖԱՅԵԼ ՂԱԶԱՆՋՅԱՆ

ՆԿ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

Թող ոչ ոք չծիծաղի, երբ լսի, որ վեցերորդ դասարանցի Տոնիկը տիկնիկներ է սիրում: Այո՛, այո՛, սիրում է տիկնիկների հետ խաղալ, նրանց համար հագուստ կարել, պճնել, զարդարել:

Եվ քանի որ ոչ մի գաղտնիք երկար ժամանակ չի կարող ծածուկ մնալ, այնպես էլ մի օր ջրի երես ելան նաև... Տոնիկի տիկնիկները:

— Տիկնիկ Տոնիկին ճանաչո՞ւմ եք,— սրանց-նրանց ծանոթացնում էին համադասարանցիները ու ձայն-ձայնի տված՝ ծիծաղում էին Տոնիկի ու նրա տիկնիկների վրա:

Ոչ ոք չէր տեսել Տոնիկի տիկնիկները, բայց, ինչպես ասացինք, երկարատև գաղտնիք չկա:

Մի օր, աշխատանքային դաստիարակության դասաժամին...

Բայց ավելի լավ է այդ մասին հետո, իսկ հիմա բացատրենք, թե ինչո՞ւ էր Տոնիկն իր տիկնիկները գաղտնի պահում: Պարզապես ամաչում էր: Ախր, մարդու, այսպես ասած, տիկնիկային տարիքը շատ վաղ է անցնում: Իսկ մեր ժամանակներում ավելի շուտ, քանի որ ոչ միայն տղաները, այլ նաև աղջիկներն են ամբողջովին կլանվում ինքնաթիռներով ու էլեկտրական սարքերով, անգամ չեն վախենում երազել ինքնաշեն ռոբոտների մասին, որոնք տիեզերք դուրս կգան ու ազդանշաններ կհաղորդեն անհայտ մոլորակներից...

Հեքիաթներից են կենդանություն առնում տիկնիկները և օթևանում մանկասենյակներում, մանուկների հետ արթնանում են, նրանց հետ քուն մտնում, նրանց հետ խաղում են, նախաճաշում, երգում ու երբեմն էլ՝ լաց լինում: Բայց մի քիչ տարօրինակ են իրենց պահում տիկնիկների ընկերները: Հասակ առնելուց հետո մի տեսակ վերից, մեծամտաբար են նայում տիկնիկներին: Նույնիսկ արհամարհանքով երես շրջում: Հեքիաթներին, իհարկե, ուզում են հավատալ, բայց, ա՛յ, տիկնիկներին դուրս են նետում հեքիաթներից: Եվ զարմացած աչքերով տիկնիկները մի քիչ տխուր, մի քիչ խռոված նայում են իրենց այնքան մտերիմ ընկերներին ու ոչ մի կերպ չեն կարողանում հասկանալ, թե ի՞նչ մեղք են գործել, ինչո՞ւ են աչքից ընկել:

Բայց Տոնիկը նրանցից չէր, որոնք մեծանալուց հետո աչքից գցում են տիկնիկներին:

— Տիկնի՛կ Տոնիկ, տուն-տուն չե՞ս խաղում,— հոգու հետ խաղում էին ընկերները՝ լղարիկ Սարգիսը, մինչև աչքերը մազերի մեջ կորած Կարենը, կարճահասակ ու հաստլիկ Պերճը, թիթեռնիկի պես թեթև ու թռվռուն Վարդիթերը... Այդ մականունները, որոնք այնքան հարմար էին նրանց, ինքը՝ Տոնիկն էր կպցրել և հետո էլ ընկերների նույն մականուններով կնքել իր տիկնիկներին:

Նկուղ տանող աստիճանների էլեկտրալամպը հաճախ այրվում է, և Տոնիկը ձեռքի լապտերով է գտնում դուռը:

Քարանձավային մթության մեջ խորհրդավոր ճռճռում է նկուղի դուռը, երկյուղալի ձայներ արձակում, ինչ-որ տեղից լսվում է կատվաձագի մըլավոց ու խավարի մեջ, փայլփլուն կոճակների պես, պեծպեծում են նրա վառ նարնջագույն աչքերը: Ասես գանձերով լի դղյակի դուռ լինի ու այդ դուռը հսկում են յոթգլխանի հրեշներ՝ կրակե լեզուները երախներից դուրս գցած՝ սուր-սուր ժանիքները մերկացրած:

Այդ ամենը Տոնիկին չեն վախեցնում, նկուղում նա պաշտպաններ ունի, անձնվեր ընկերներ, հավատարիմ զինվոր տիկնիկներ:

Նկուղում, հազար ու մի մանրուքի հետ, մուրաբաների տուփերի ու թթվի տակառների հարևանությամբ, մի փոքրիկ արկղ կա, որը վաղուց է, ինչ Տոնիկինն է համարվում: Ինքն է փական դրել, արկղի մեջ դարակներ ամրացրել ու շարք-շարք շարել գույնզգույն լաթակտորներ, կոճակներ, ստվարաթղթի կտորտանք, կոճաթելեր և անգամ՝ ասեղներ: Երկարուկ դարակների վրա շարված շշերն ու տուփերը, խաղողի, դեղձի ու տանձի շարանները նրան չեն շլացնում, թեև երբեմն բերանը քաղցրացնում է ալանիով, տանձով կամ խաղողով:

Տոնիկը բացեց արկղն, ու ասես աշխուժացան տիկնիկները: Լղարիկ Սարգիսը ժպտաց Տոնիկին, բայց լավ չէր կարող ժպտալ, քանի որ Տոնիկը դեռևս չէր ամրացրել... Սարգսի ատամները: Հաջորդը Կարենն էր, որի պարանոցը ընկնում էր ուսին, պետք էր ուղղել, իսկ հաստլիկ Պերճը հազիվ էր ոտքերի վրա կանգնում...

Տոնիկը փոքրիկ մուրճն ու մկրատը գործի դրեց: Գնալով ավելի կատարյալ տեսք էին առնում տիկնիկները, լայն-լայն ժպտում էին, լիա-

# ՏԻԿՆԻԿՆԵՐԸ

թոք ծիծաղում կամ էլ խռոված պես հոնքերը կիտում: Տոնիկը ստվարաթղթի վրա պատկերել էր նոր տիկնիկների, որոնք պետք է նմանվեին ոչ միայն դպրոցական ընկերներին, այլ...

Տոնիկը ինքնամոռաց աշխատում էր ու երբեմն նկուղի մութ անկյունից ասես լսում Աշոտի ձայնը.

— Տիկնի՞կ Տոնիկ, ես քեզ ցո՛ւյց կտամ...

— Ո՞վ է...

— Ես եմ՝ Աշոտը, բա ես այսպիսի քի՞թ ունեմ:

— Ունե՛ս, ունե՛ս,— քրքջում է Տոնիկը:

— Բա իմ մազերը դեղի՞ն են...

— Հհը՛:

— Իսկ ականջներս ինչո՞ւ են այսքան մեծ...

— Որ լա՛վ լսես,— ծոր է տալիս Տոնիկը՝ գործից առանց կտրվելու...

Քրթմնջում են մյուս տիկնիկները նույնպես, ամեն մեկն իր թերություններից է դժգոհում: Իսկ Տոնիկի կարծիքով դրանք նրանց թերությունները չեն, այլ՝ առավելությունները:

Աշխատանքային դաստիարակության դասաժամ էր:

Տղաները չափչփում էին դետալները, երբ դեղնամազ, նեղլիկ տաբատով, նկարազարդ վերնաշապիկով Աշոտը արհեստանոցով մեկ բղավեց.

— Տեսե՛ք, տեսե՛ք, Տոնիկի տիկնի՛կը...

Տոնիկը, իրոք, տիկնիկը գրկած դպրոց էր բերել ու արհեստանոցում, թիթեղյա ոտքերի վրա անցքեր էր բացում էլեկտրական ծակիչով:

Այդ լսեցին տղաները, ու տիկնիկը անհետացավ: Իսկ դասամիջոցին, խեղճ տիկնիկը, որը դեռևս ոտքերի վրա ամուր կանգնել չէր կարողանում, սկսեց ձեռքից-ձեռք ճամփորդել, սավառնել տղաների գլխավերևում: Աղջիկներն էլ միացան նրանց, քրքիջով լցվեց միջանցքը:

Տոնիկը կարմրատակած դուրս թռավ արհեստանոցից:

Նա շնչասպառ տուն հասավ, իջավ նկուղ և այն, ինչի որ ականատես եղավ, ավելի սարսափելի էր, քան հնամյա դղյակի ծանր դռան ճռճռոցը լռության մեջ, երախներից կրակե լեզուները հանած յոթգլխանի հրեշներն ու կատուն՝ մթնում փայլատակող դեղնականաչ աչքերով...

Արկղը բաց էր, իսկ տիկնիկներն անհետացել էին:

Տոնիկը քարացավ: Ո՞ւր են իր տիկնիկները: Ո՞ր չարագործի ձեռքով մերկ ու անտուն ցրվել են աշխարհով մեկ ու չեն գտնում տուն բերող ճամփան:

Մյուս օրը դպրոցի ճանապարհին հանդիպեց դեղնամազ Աշոտը:

— Քեզ դասերից հետո պիոներական սենյակ են կանչում,— նետեց նա ատամների արանքից ու, ինչ-որ բան թաքցրած լեզվի տակ, արագ չքվեց տեսադաշտից:

Տոնիկը մտածեց-մտածեց ու մտքում մատը դրեց Աշոտի վրա:

Ա՛յ թե ով է հափշտակել իր տիկնիկները:

Պիոներական սենյակում հավաքվել էին ոչ միայն դասընկերները, այլև եկել էին բարձր դասարանցիներից, ուսուցիչներ էլ կային:

Տոնիկը չհավատաց աչքերին, երբ ներս մտավ:

Սեղանների վրա, պատուհանների գոգերին, պատերից ժպտում էին իր տիկնիկները: Նրանք այստեղ ավելի զարմանալի ու ավելի կատակաղեմ էին, քան նկուղում, և Տոնիկն ակամա ինքն էլ հավաքվածների հետ սկսեց ծիծաղել:

— Այստեղ ցուցադրված են դպրոցի շնորհալի աշակերտ Տոնիկի տիկնիկները,— հանդիսավորությամբ ասաց ավագ ջոկատավարը, և բոլորը ծափահարեցին: Ապա ջոկատավարը երկար խոսեց տիկնիկային արվեստի և տիկնիկային թատրոնների մասին.— Մոսկվայում ոչ մի թատրոնի տոմս ձեռք բերելն այնքան դժվար չէ, որքան Օբրազցովի տիկնիկային թատրոնինը,— ասաց նա,— աշխարհի ամենահռչականավոր թատրոններից մեկն է այն, և նրա ղեկավարը՝ Օբրազցովը, աշխարհի նշանավոր արվեստագետներից է:

Ջոկատավարի այս խոսքից հետո հենց իր՝ Տոնիկի աչքում էլ իր տիկնիկները ավելի խոսուն դարձան:

Ի՞նչ գովասանքներ լսեց այդ օրը Տոնիկը, ի՞նչ գովասանքներ:

Նրա ցուցահանդեսի համբավը դուրս եկավ դպրոցի պատերից...

Տոնիկի այդ տիկնիկներն այլևս չվերադարձան նկուղ:

— Նվիրում եմ դպրոցին,— ասաց Տոնիկը:

Նրանց տանը, նկուղում, ծնվում էին նոր, զարմանահրաշ տիկնիկներ...





# ԿԿՎԻ ԲԱԽՏԸ

ԳՐԻԳՈՐ ԽՂԻԿՅԱՆ

Ասում են, թե շատ հնում
Կկուն էլ էր բույն շինում,
Բայց ծույլ էր այս թռչունը,
Պինդ չէր հյուսում իր բույնը,
Պատերն ամբողջ՝ ճեղք ու ծակ,
Դուռն էլ վրան չուներ փակ:
Գոնե մեկ-մեկ նորոգեր,
Դուրսը, ներսը քիչ կոկեր:

Մի գարնան էլ, տաքերին,
Երբ հանել էր ձագերին,
Թռավ գնաց մայր կկուն
Մի քիչ կեր-մեր բերի տուն:
Գնաց, բայց ոչ գնար նա,
Թևը կոտրեր, մնար նա...
Ու երբ կրկին դարձավ տուն,
Էլ ոչ ձագ կար, ոչ էլ բույն...
Քամին բույնն էր ավերել,
Ձագերին հետը տարել...

Այդ օրից միշտ վախվորած,
Աչքին ձագերն իր կորած՝
Խեղճ թռչնակը իր բնում
Երբեք էլ ձու չի դնում:
Իր փոխարեն թխսանում՝
Ուրիշներն են ձագ հանում,
Պահում նրանց, տալիս կեր
Ու մինչև վերջ կանգնում տեր:

Դրա համար ողջ գարուն
Նա ողբում է անտառում.
— Կո՛ւ-կո՜ւ, կո՛ւ-կո՜ւ,—
Լանչում էր,—
Ի՞նչ անեմ, որ բախտ չունեմ:

*Նկ. ՀՐԱՉՅԱ ԱՎԱՆԵՍՅԱՆԻ*




# ՀԱՅԱՍՏԱՆԸ ՌՈՒՍ ՆԿԱՐԻՉՆԵՐԻ ԱՉՔԵՐՈՎ

Երևանը պատկերող առաջին նկարը պատկանում է ռուս գեղանկարիչ Մ. Մ. Իվանովի վրձնին:

Միխայիլ Մատվեևիչ Իվանովը (1748—1828) ավարտել է Պետերբուրգի գեղարվեստի ակադեմիան, ապա ուսումը շարունակել Փարիզում և Հռոմում: Հետագայում Պետերբուրգի ակադեմիայում բնանկարչություն և ռազմանկարչություն է դասավանդել: Նրա վարպետորեն կատարած աշխատանքները մեծապես նպաստել են ռուսական գեղանկարչության մեջ ռեալիզմի զարգացմանը:

1789 թ. ռուս-թուրքական պատերազմի ժամանակ, գտնվելով ռուսական զորքերի գլխավոր հրամանատար իշխան Գ. Ա. Պո-



# Աշխատանքային

Արճիսը Նոյեմբերյանի շրջանի մեծ գյուղերից է: Արճիսցիներն առաջինը եղան շրջանում, որ բարձրացրին Մեծ հայրենականում զոհված համագյուղացիների հուշարձան-կոթողը: Վերջին 5—6 տարում սովխոզը մրգի արտադրությամբ կարողացավ հավասար իրավունքով կանգնել այնպիսի փառաբանված տնտեսությունների կողքին, ինչպիսիք են Ձեյթունը և Հաղթանակը. 1976-ին բրիգադավար Ժորա Մովսիսյանն արժանացավ ՍՍՀՄ պետական մրցանակի դափնեկրի կոչման: Դարձյալ շատ ու շատ կողմերով է աչքի ընկնում Արճիսը, այդ թվում և իր փառաբանված աշակերտական-արտադրական բրիգադով:

Երբ ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը գտնվում էր Նոյեմբերյանի շրջանում, Արճիսի սովխոզի այգիներում շրջելիս դիտեց ու հիացավ արճիսցի երեխաների արտադրական բրիգադի աշխատանքով և նրանց արժանացրեց անվանական նվերների: Բրիգադի անդամներից Ջեմմա Անտոնյանը «Ոսկե հասկ» մրցանակի մրցանակակիր է, Արմեն Մուսայելյանը անցյալ տարի մասնակցել է Մոսկվայում կայացած աշակերտական-արտադրական բրիգադների առաջավորների հավաքին:

Այս բրիգադի աշխատանքի բարձր գնահատականը պիտի համարել նաև այն, որ նրա երկար տարիների անփոփոխ ղեկավարը՝ ուսուցիչ Սամադ Ալա-

տյոմկինի շտաբում, Իվանովը եղել է Հայաստանում: Ստեղծել է մի շարք բնանկարներ, այդ թվում «Մի տեսարան Երևան քաղաքից» աշխատանքը, որտեղ պատկերված է Երևանի բերդը իր ճակա պարիսպներով ու աշտարակներով, Հրազդան գետը, Երևանի հին՝ Կարմիր կամ «Խոջա Փլավի» կոչվող կամուրջը:

1796 թ. կոմս Զուբովի արշավանքի ժամանակ Մ. Մ. Իվանովը կրկին եղել է Հայաստանում, մեծ հետաքրքրություն ցուցաբերել դեպի Հայաստանի հին մայրաքաղաք Անին: Էրմիտաժում պահվում է նկարչի Անին պատկերող ալբոմը:

*ԱԻԴԱ ԲԱԲԱՅԱՆ*

*Երևան քաղաքի պատմության թանգարանի բաժնի վարիչ*



# ավանդույթներին հավատարիմ

վերոյանը, պարգևատրվեց Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով:

Բրիգադում ներգրավվելը սոսկ ցանկության հարց չէ: Բրիգադը իր «օրենքներն» ունի, իր «կանոնադրությունը»: Նրա անդամը անպայման ուսման առաջավոր պետք է լինի, գերազանց վարք ունենա, աչքի ընկնի տոկունությամբ ու դիմացկունությամբ: Նվնըվացողները, «մայրիկների բալիկները», ծույլերն ու գլուխ պահողներն այստեղ գործ չունեն:

Երկու տարի առաջ բրիգադը որոշեց ունենալ իր այգին:

Նրանք՝ թվով 85 հոգի, վերցրին 12 հեկտար խաղողի այգի ու գործի անցան: Հողի մարդը գիտե, թե որքան քմահաճ ու պահանջկոտ է խաղողի այգին: Երեխաները չվախեցան դժվարությունից: Բոլոր աշխատանքներն իրենք կատարեցին՝ արձակուրդների օրերին, դասերի հետ, դասերից դուրս: Եվ ի՞նչ այգի բարձրացավ, ուղղակի ցուցահանդեսի արժանի:

12 հեկտարի վրա 85 հոգին հո չէի՞ն կարող կռչել ու մնալ, այն դեպքում, երբ տնտեսությունը «խեղդվում էր» գործի շատությունից: Եվ երեխաները օղակներ կազմեցին՝ մի մասը գնաց խոտհավաքի, և բրիգադի անվան դիմաց գրանցվեց 255 հեկտար խոտի հավաք, մյուս մասը գնաց պտուղ հավաքելու, և գրանցվեց 280 տոննա պտղի հավաք, երրորդը վագոններին ընտրովի միրգ էր բարձում Միության ամենատարբեր քաղաքներն ուղարկելու համար, և գրանցվեց 300 տոննա մրգի առաքում, 25 հեկտար եգիպտացորեն քաղհանեցին ու փխրեցրին, խաղողի մյուս այգիներում 45 հեկտար վապի չոր և կանաչ կապ կատարեցին, 55 հեկտար միջվարային տարածություն մաքրեցին մոլախոտերից ու փխրեցրին, 3 հեկտար ճակնդեղի դաշտ մշակեցին... Եվ ուրիշ-ուրիշ ինչե՞ր արեցին նրանք 1977-ի ամռանը: Նրանք հավատարիմ մնացին աշխատանքային այն հրաշալի ավանդույթներին, որ գյուղն իր պապկներին է հանձնել սերնդե-սերունդ:

Հարց կտաք, իսկ նրա՞նք, ովքեր ընդգրկված չեն այդ բրիգադում:

Նրանք էլ անգործ չնստեցին: Արձիսը պորտաբույծների, հով ու պով տեղերում ման եկողների գյուղ չէ: Երեխան աչքը բացում է՝ հորն ու մորը աշխատանքի մեջ, հողին կապված է տեսնում և ինքն էլ օրինակ է առնում նրանցից: Այնպես որ ամառային արձակուրդներին դպրոցի բոլոր աշակերտները՝ մեծից փոքր, դաշտ ու այգում էին և վաստակած արժանապատվությամբ փակեցին աշխատանքային քառորդը:

*ՏԱՆՅԱ ԹԱՆԴԻԼՅԱՆ*



# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ
*Բանասիրության դոկտոր*

### 3. ԼԱՎ ԽՈՍՔԻ ԱՌԱՋԻՆ ՆՇԱՆԸ

Չկարծեք, թե լավ խոսքը բոլոր մարդիկ նույն կերպ են հասկանում: Կան մարդիկ, որ լավ խոսքը, գրավոր լինի թե բանավոր, համարում են ճոխ, փարթամ խոսքը՝ լեցուն դժվար մատչելի բառերով: Մարդիկ էլ կան, որ հավանում են պարզ, հասարակ, ամենքին հասկանալի խոսքը: Ոմանց մաքուր գրական խոսքն է դուր գալիս, ոմանց էլ՝ ժողովրդական ոճերով, նույնիսկ բարբառային դարձվածքներով համեմված խոսքը: Ճաշակի հարց է:

Այստեղ են ասել՝ ճաշակի մասին չեն վիճում (թեև շատ հաճախ վիճում են և այն էլ՝ կրքոտ ու անզիջում): Ինչպես էլ որ լինի՝ լավ խոսքն ունի մի նշան, մի հատկանիշ, որ անվիճելի է, պարտադիր՝ բոլոր ճաշակների համար: Ճիշտ է, լավ խոսքի պայմանները շատ են և բոլորն էլ կարևոր (մեր զրույցներից ամեն մեկը նվիրված կլինի դրանցից որևէ մեկին), բայց կա մի պայման, որ կարևոր է ամենից ավելի:

Ո՞րն է դա: Խոսքի ստույգ լինելը: Ինչո՞ւ ենք այդպես դատում: Այդպես դատում ենք՝ ելնելով խոսքի, լեզվի գոյության բուն նպատակից: Ո՞րն է այդ նպատակը: Լեզվագետները տվել են դրա պատասխանը՝ լեզուն ծառայում է մարդկանց հաղորդակցության նպատակին, լեզուն հաղորդակցության միջոց է: Առանց այդ միջոցի մարդկային հասարակություն չէր կարող ստեղծվել և գոյություն ունենալ:

Հասկանալու համար, թե դա ինչ է նշանակում՝ պատկերացրեք մի պահ, թե ի՛նչ տեղի կունենա, եթե մարդիկ զրկվեն այդ միջոցից: Գնացքները կանգ կառնեն, որովհետև մեքենավարը չի իմանա, թե ուր պիտի մեկնի: Բժիշկները անելիք չեն ունենա, որովհետև հիվանդը չի կարող ասել, թե ինչն է ցավում: Թերթերը չեն տպագրվի, ռադիոն ու հեռուստացույցը կլռեն, և մենք չենք իմանա, ինչ է կատարվում

Սկիզբը՝ №№ 5, 6-ում:

Կարդա այս գիրքը

## Աստղային

Գարկվում է, որ նույնիսկ աստղերը չեն սիրում միայնակ լինել: Տիեզերքում նրանք ապրում են խմբերով: Աստղային այդ ընտանիքները կոչվում են գալակտիկաներ:

Քանի՞ աստղ կարող է լինել մեկ աստղային ընտանիքում՝ գալակտիկայում: Հարյո՞ւր, հազա՞ր, միլիո՞ն... Մեր գալակտիկայում կա ավելի քան... 150 միլիարդ աստղ:

Դժվար է հավատալ, բայց այդպես է: Ընդ որում, մեր գալակտիկան միակը չէ տիեզերքում: Մինչև այժմ գիտնականների հայտնաբերած գալակտիկաների թիվն անցնում է միլիարդից:

Մեր գալակտիկայի աստղերից մեկն էլ Արևն է: Նա մյուս աստղերից մեծ ու պայծառ է երևում, որովհետև շատ մոտ է մեզ: Արևից մինչև Երկիր ընդամենը 150 միլիոն կիլոմետր է: Լույսը, սուրալով վայրկյանում 300 հազար կիլոմետր արագությամբ, ընդամենը 8 րոպեում է Արևից Երկիր հասնում: Որպեսզի պարզ լինի, թե որքան չնչին է այդ 8 րոպեն, ասենք, որ հաջորդ մեզ ամենամոտիկ աստղից լույսը Երկիր է հասնում 4 տարում: Իսկ մեր գալակտիկայի չափերն այնքան վիթխարի են, որ նրա մի ծայրից մյուսը լույսն անցնում է մոտ 200 հազար տարում:

Այնուհանդերձ մեր գալակտիկան տիեզերքի մի չնչին մասնիկն է: Անդրոմեդայի միգամածություն կոչվող գալակտիկան, որը մեր գալակտիկայի, այսպես ասած, ամենամոտիկ հարևանն է, մեզանից հեռու է ավելի քան 1 միլիոն լուսատարով: Իսկ առայժմ մեզ հայտնի ամենահեռավոր գալակտիկաներից լույսը մեզ է հասնում մի քանի հարյուր միլիոն տարում:

Միլիարդավոր աստղերից կազմված գալակտիկաները փոքրիկ կղզյակների նման սփռված են տիեզերքով մեկ և հազիվ են

մեր երկրի ու աշխարհի տարբեր ծայրերում: Հեռախոսը կդառնա անպետք մի առարկա, մարդիկ չեն կարողանա բացատրվել, ուրեմն՝ շարունակել իրենց համատեղ գործունեությունը, և մեզ կթվա, թե մենք ընկել ենք անծանոթ մի մոլորակ, ուր ոչինչ մատչելի չէ մեզ:

Հիշո՞ւմ եք Բաբելոնի աշտարակաշինության առասպելը: Բաբելոնցիները վճռում են կառուցել այնպիսի մի աշտարակ, որ հասնի մինչև երկինք: Եվ գործի են անցնում: Աստծուն մեծապես զայրացնում է մարդկանց հանդգնությունը: Եվ նրանց ծրագիրը վիժեցնելու համար նա գտնում է ամենալավ միջոցը՝ խառնում է նրանց լեզուն: Մինչ այդ միմյանց հասկացող մարդիկ սկսում են խոսել տարբեր լեզուներով, և այնպիսի շփոթ է ընկնում նրանց մեջ, որ շունը տիրոջը չի ճանաչում: Այլևս ի՞նչ շինարարություն, ի՞նչ բան. գործը տապալվում է: Առանց միմյանց հասկանալու մարդիկ ոչինչ չեն կարող անել,— ասում է այս հինավուրց իմաստուն առասպելը:

Ասենք նաև, որ լեզուն ոչ միայն ժամանակակից մարդկանց հաղորդակցության միջոցն է, որով տարբեր սերունդները, տարբեր դարաշրջանները «խոսում» են միմյանց հետ: Լեզուն է, որ արձանագրում, պահպանում, հաջորդաբար սերունդներին է հանձնում մարդկության ձեռք բերած գիտելիքները և կենսափորձը: Ասենք, Իսահակ Նյուտոնը հայտնաբերել է երկրի ձգողության օրենքը. ինչպե՞ս կարող է նա իր գյուտը հաղորդել ժամանակակիցներին, ու հաջորդ սերունդներին, եթե ոչ լեզվի միջոցով: Այդպես էլ՝ ամեն ինչ: Լեզվի շնորհիվ է, որ մենք տեղյակ ենք դառնում, թե ինչպես են ապրել, գործել, մտածել մարդիկ մեզանից դարեր առաջ: Ահա ինչու գիտնականները գլուխ են կոտրում գտնելու հեռավոր ժամանակներում անցած-գնացած, բայց իրենց գրերը թողած լեզվի բանալին, որ իմանան ինչն ինչպես է եղել:

Մարդկությունն, այսպիսով, դարերի ընթացքում ամբարած փորձն ու գիտելիքները պահում-պահպանում է լեզվի միջոցով:

Վերջապես, լեզվի միջոցով է, որ մենք մեր մտքերը, մեր ապրած հուզմունքները, մեր վիշտը և ուրախությունը, մեր համակրանքը և հակակրանքը կարողանում ենք հաղորդել մեկ ուրիշին:

Ուրեմն, որքան ստույգ լինի խոսքը, այնքան լավ կծառայի իր գլխավոր նպատակին՝ մարդկանց փոխադարձ հաղորդակցմանը: Հենց դրանից ելնելով էլ՝ լավ խոսքի առաջին հատկանիշը, առաջին նշանը մենք համարում ենք *ստույգ* լինելը: Իսկ ստույգ խոսքն ավելորդաբանություններից ազատ, մտքի կամ հուզմունքի էությունը ճիշտ ու խնամքով ընտրված բառերով ու դարձվածքներով արտահայտող խոսքն է:

Այդպիսի խոսքին հարկավոր է տիրապետել, դա ինքնիրեն ձեռք չի բերվում, դրա համար պահանջվում է ջանք ու աշխատանք: Եվ այստեղ մեզ կարող են անգնահատելի ծառայություն մատուցել նաև ճշգրիտ գիտությունները, եթե միայն մենք կարողանանք օգուտ քաղել նրանց առատաձեռն ծառայությունից: Բայց դա մի առանձին զրույցի նյութ է:

*(Շարունակելի)*

# այբուբեն



*նշմարվում աստղադիտակներով: Նրանց մասին ձեզ ավելի մանրամասն կպատմի Վ. Վահինյանի «Աստղային այբուբեն» գիրքը, որը հրատարակել է «Սովետական գրող» հրատարակչությունը: Կարդալով այդ գիրքը, դուք կիմանաք, թե ինչպիսի կյանքով է ապրում տիեզերքը: «Աստղային այբուբենը» ձեզ կպատմի մեր Արեգակնային համակարգության մոլորակների, գերնոր և թզուկ աստղերի, ռադիոգալակտիկաների, գալակտիկաների միջուկներում տեղի ունեցող պայթյունների մասին, նախաաստղային այն նյութի մասին, որի գնդաձողի ծայրի չափ մասնիկը կարող է կշռել... 10 միլիոն տոննա: Դուք նաև կիմանաք, թե անցյալի խոշոր գիտնականները ինչպես են քայլ առ քայլ խորացել տիեզերքի գաղտնիքների մեջ, ինչպես են այդ գործը շարունակում այսօրվա գիտնականները, և թե ինչպիսին է Վ. Համբարձումյանի ու Բյուրականի աստղադիտարանում աշխատող հայ մյուս գիտնականների ներդրումը տիեզերքի ճանաչման գործում:*

*Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆ*





# ԿԱՄՍԱՐ ԱՎԵՏԻՍՅԱՆԻ ՀԻՇԱՏԱԿԻՆ

## (1905 — 1976)

ՎԱՀՏԵՐ ԱՐԱՄՅԱՆ

Կիզիչ արևից և տոթից թուլացած, դանդաղ ու ծանր քայլերով դեպի սաղարթախիտ ծառն էր գալիս սպիտակահեր մի ծերունի: Պարզ և հասարակ շորեր կային նրա հագին, ահագին մի թղթապանակ թևի տակ: Նա անցավ փողոցի արևով ողողված հատվածը, հասավ ծառին և կանգնեց նրա ստվերում՝ բնի մոտ: Խորը շունչ քաշեց, ձեռքի պայուսակը դրեց գետին. «Այսպիսի շոգեր, իհարկե, եղել են Երևանում: Հայաստանը ոչ միայն ցուրտ, այլև շոգ երկիր է,— մտածեց նա,— շոգ երկիր է: Բայց ես երբեք այսպես չեմ զգացել շոգը, ինչպես հիմա: Նշանակում է՝ ծերացել եմ, ծերացել եմ արդեն: Վերջանում են նաև աշնան օրերս: Ձմեռնամուտ է, ծերո՛ւկ: Ի՞նչ պետք է անես: Ոչինչ անել չես կարող: Այսպիսին է կյանքի ընթացքը: Ի՞նչ կլիներ, եթե բնությունը և մարդիկ հանկարծ զրկվեին կանաչից և ծառեր չլինեին աշխարհում: Կլիներ այն, որ չէր լինի նաև այս ծառը և ես չէի կանգնի նրա ստվերում, իսկ ստվերն ինձ համար կյանք է հիմա: Ամեն ինչ այստեղ կյանք է: Ահա այն բոլորը,— նա ձեռքերը տարածեց շուրջը,— ինչը մենք կյանք ենք համարում: Կյանքը շատ պարզ և հասարակ բան է, մենք կառչում ենք նրանից գիտակցաբար կամ բնազդաբար, ամեն վայրկյան, ամեն տեղ, և դեռ մտածում ենք, որ չենք հասկանում, թե ի՞նչ է կյանքը: Կյանքը սա է, կյանքն այն է: Ահա այն, որ գտնվում է ինձանից միայն երկու քայլ հեռու»:

Իսկ նրանից երկու քայլ հեռվում գտնվում էր մի ցայտաղբյուր, որից սառույցի հնչեղ բյուրեղների նման ցայտում էին ջրի սառը շիթերը և կրնգում օգոստոսյան շիկացած օդում: Նա գնաց դեպի ցայտաղբյուրը, կռացավ նրա վրա և երկար ժամանակ չէր բաժանվում նրանից: Երբ գլուխը բարձրացրեց, դեմքը թրջված էր, թրջված էին ճերմակ գանգուրները, և ջրի շիթերի միջից ժպտում էին նրա բարի, խաղաղ աչքերը:

Այդ մարդը Կամսար Ավետիսյանն էր, աշխարհագրագետ, բնագետ, հոգեբան, արտաքուստ աշխարհի ամենախաղաղ և հանգիստ մարդկանցից մեկը:

Կանգնած էր նա և նայում էր ցայտաղբյուրին, և դժվար չէր կռահել, թե ինչ էր մտածում մարդն այդ պահին: Մարդս ի՞նչ կարող է երազել շոգին՝ ջուր և զով քամի: Նա լսում էր ջրի մեղմ զրույցը և թվում էր նրան, թե աշխարհը լիքն է ջրի մրմունջով, բարի են բոլոր մարդիկ և հանգիստ, ու ամեն տեղ զով քամիներ են փչում:

Եվ արևը, օգոստոսյան դաժան արևը այրում էր քաղաքի մայթերը և կրակ էր թափում անցորդների գլխին: Որքան ժամանակ կարելի էր նստել շիկացած վառարանի մոտ՝ այնքան էլ կարելի էր դիմանալ այս թեժ արևին.. Մարդիկ փախչում էին, հևում, ստվերներ էին փնտրում, բայց ամեն տեղ կարծեք մի վառարան էր դրված՝ մեկը թեժ, մյուսն ավելի թեժ ու կարմիր: Այստեղ, ջրի մոտ զով էր և նրա բորբոքված ուղեղում սառցասարեր կային, սառնորակ աղբյուրներ, մշուշոտ սառցադաշտեր, հեռավոր-հեռավոր երկրներ և խանձված ու այրված տափաստաններ ու այնտեղ թափառող առյուծներ, ջրերում լողացող կոկորդիլոսներ և ահավոր-ահավոր տոթեր ու արևներ: Նա հոգնած առյուծի նման թափահարեց ճերմակ բաշը և թեթևակի դողաց:

Նա գնաց դեպի իր պայուսակը, վերցրեց, դրեց թևի տակ ու հեռացավ: Պայուսակում մետաքսե մի քարտեզ կար, աշխարհի քարտեզն էր: Նա տանում էր աշխարհն իր պայուսակում, տանում էր համալսարան, լսարանի պատից կախելու համար: Նա պետք է հարցներ իր ուսանողներին, թե ո՞վ ինչպես է տեսնում այն, ըզգում և հասկանում:

— Ի՞նչ է աշխարհը,— նա պետք է հարցներ, և նրանք պետք է մտածեին ու անմիջապես չպետք է պատասխանեին այս պարզ և հասարակ հարցին:

Նա գնում էր լսարան, նա արդեն տեսնում էր անհանգիստ դեմքեր, հուզված և թրթռացող սրտեր, նա տեսնում էր նրանց, իր ուսանողներին, որոնց պետք է այսօր իր գանձերը բաժաներ: Անթիվ և անհամար էին այդ գանձերը և նրանց մի մասը մնաց իր մոտ, բոլորը չտարան, բոլորը բաժանել չհասցրեց գիտնականը՝ ժամանակը վերջացավ...

Ամբողջ մի աշխարհ կար նրա պայուսակում. «մետաքսե աշխարհ», որը նա կախում էր պատից և հարցնում «Ի՞նչ է աշխարհը, ո՞վ կասի»...

# ՍԱՆՆԻԿՈՎԻ ԵՐԿԻՐ

*ԿԱՄՍԱՐ ԱՎԵՏԻՍՅԱՆ*

Աշխարհագրական գրականության մեջ այս անունով է հայտնի այն ցամաքը, որը իբր գտնվել է Հյուսիսային սառուցյալ օվկիանոսում, Նոր Սիբիրյան կղզիներից հյուսիս:

Սաննիկովի Երկիր անունը պատկանում է այն տեղանունների թվին, որոնք տրվել են գոյություն չունեցող վայրերին: Այդ լեգենդար երկիրը (կղզին), որը մեկ և կես դար զբաղեցնում էր աշխարհագրագետներին և ճանապարհորդներին, Յակով Սաննիկովի երևակայության հետևանքն էր: Նա 1810 թվականին այժմյան Կոտելնի կղզու արևմտյան մասում, հեռավոր հորիզոնում, նկատել էր ինչ-որ կապտություն և նրան թվացել էր, թե տեսել է ցամաք (կղզի): Այս կարծեցյալ ցամաքը ստացավ Սաննիկովի Երկիր անունը: Հետագայում Սաննիկովի նըշմարած երկիրը շատ փնտրեցին, մոտ մեկ դար տևեց որոնումը, բայց այդպես էլ չգտան, որովհետև չկար և չէր եղել:

Վերջին տարիներին այդ վայրերը հետախուզեցին սովետական նավերը: Նրանք ոչ մի կղզի չգտան: 1934 թվականին, ակադեմիկոս Վ. Ա. Օբրուչևի խնդրանքով «Սաննիկովի Երկրի» շըրջանը ինքնաթիռներ ուղարկվեցին, բայց նրանք ևս ոչինչ չգտան: Դրանից հետո գիտնականները լիովին ապացուցված համարեցին, որ «Սաննիկովի Երկիր» գոյություն չի ունեցել:

Գիտնականների կարծիքով, հավանական է համարվում, որ գուցե սառույցների մեծ կուտակում է տեղի ունեցել, իսկ հետագայում քշվել տարվել:

«Սաննիկովի Երկիր» փնտրելիս սովետական աշխարհագրագետները շատ հայտնագործություններ և ուսումնասիրություններ կատարեցին հյուսիսային լայնություններում, որի հետևանքով բացահայտվեցին Կենտրոնական Արկտիկայի շատ գաղտնիքներ: Այդ ուսումնասիրությունները նույնպես հաստատեցին, որ այդպիսի երկիր գոյություն չի ունեցել:

Սաննիկովի այդ երևակայական «երկիրը» ընկավ գիտագեղարվեստական շատ գործերի սյուժեի հիմքում: Հանրահայտ է Վ. Ա. Օբրուչևի «Սաննիկովի երկիր» գիտաֆանտաստիկ վեպը:

*Նկ. ՌՈՒԲԵՆ ԹՈՒՄԱՍՅԱՆԻ*

## ԱՐՀԵՍՏԱԳՈՐԾ ՓՇԱՏԵՆԻՆ

*ՌԱԶՄԻԿ ՀԱՐԴՅԱՆ*

Արծաթ ձեռքը ջուրն է սուզում,
Արծաթ ձուկ է բռնել ուզում
Ծառը արծաթագործ:
Արծաթ ալիքն է ցած գալիս,
Նրա ձեռքը խուտուտ տալիս
Ու շշնջում՝ անփորձ:

Ծառն ասում է՝ ափսո՜ս, ափս՜ղ,
Արծաթ ձուկը հեռու փախավ,
Ո՞ւմ հետ պիտի խաղամ:
Կանգնած վճիտ առվի ափում,
Փշատներս ջուրն եմ թափում
Ո՞ր ձկնիկի համար:

## ԱՂԲՅՈՒՐ

*ՄԵՐՈ ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆ*

Լեռան փեշին, ճամփի վրա,
Ձայնը՝ մեղմիկ, ձայնը՝ մաքուր,
Ինչպես փոքրիկ սրնգահար
Երգ է ասում մի պաղ աղբյուր:
Ակը՝ մաքուր ու կապուտակ
Ու հատակին՝ գույն-գույն քարեր,
Ասես ջրին պարզ ու հստակ
Մանուշակի փունջ են բամել:



# ԲՆՈՒԹՅԱՆ ՏԱՐՐԵՐԻ ՓՈԽԱԴԱՐՁ ԿԱՊՆ ՈՒ ՊԱՅՄԱՆԱՎՈՐՎԱԾՈՒԹՅՈՒՆԸ

## 2.—ՆՅՈՒԹԵՐԻ ՄԵԾ ՇՐՋԱՆԱՌՈՒԹՅՈՒՆԸ ԲՆՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Կենդանի նյութի գլխավոր բաղադրիչ մասը կազմում են թթվածինը՝ 65—70 տոկոս և ջրածինը՝ 10 տոկոս: Ածխածինը, ազոտը, կալցիումը կազմում են 1—10 տոկոս, ծծումբը, ֆոսֆորը, կալիումը, կայծքարը՝ 0.1-ից մինչև 1 տոկոս, երկաթը, նատրիումը, քլորը, ալյումինը և մագնեզիումը՝ 0,01-ից մինչև 0,1 տոկոս:

Մարդու գործունեության հետևանքով էապես փոփոխվում է տարրերի այս տոկոսային հարաբերությունը, ընդ որում կենսոլորտի նյութերի կենսաքիմիական շրջանառության կարևորագույն և ամենամասսայական խախտումները առաջանում են անտառների ոչնչացման և խոտածածկոցով դրանց փոխարինման, պրերիաների, պամպասների, տափաստանների հերկման, անապատների ոռոգման, դրանց փոխարեն գյուղատնտեսական կուլտուրաների պլանտացիաներ, այգիներ հիմնելու հետևանքով: Եվ չնայած պարարտացման միջոցով մենք ամեն տարի մեկ հեկտարի հաշվով հողի մեջ ենք մուծում 100—300 կգ ազոտ, ֆոսֆոր և կալիում, այնուամենայնիվ, բերքի հետ ամեն տարի հողից հեռացնում ենք մինչև 400—600 կգ մոխրանյութեր և ազոտ:

Որպեսզի պատկերացնենք, թե որքան բարդ է բուսական առանձին ֆիտոցենոզների և արտաքին միջավայրի միջև եղած կապն ու փոխադարձ պայմանավորվածությունը, վերցնենք անտառային ֆիտոցենոզի օրինակը:

Սկիզբը՝ № 6-ում:

Սխեմայի վրա պարզ երևում է, թե ինչպես են միմյանց հետ կապված մթնոլորտը, հողը, ջրային ավազանները, բուսական ծածկոցը, թե ինչպես է արեգակնային էներգիայի ազդեցության տակ կուտակվում օրգանական նյութը, ինչպես է այն անցնում հողին, կրկին վերադառնում բույսերին և այլն: Պարզ երևում է նաև ջրի շրջանառության սխեման՝ բնության տարբեր կոմպոնենտների միջև:

Անտառի էկոլոգիական սիստեմի մեջ մտնող անթիվ-անհամար կենդանիները միմյանց հետ կապված են ամենաբազմազան կապերով: Դրանցից ամենակարևորները սննդային և տարածական կապերն են, այն կապերը, որոնք գոյության կռվի հիմքն են հանդիսանում՝ հանուն բնակվելու տեղի և սննդի:

Ի տարբերություն երկրագնդի կեղևի միջին մասի քիմիական բաղադրության, բույսերի կենսազանգվածը հարստացված է ածխածնով, ջրածնով, ազոտով և թթվածնով, իսկ կենդանիների կենսազանգվածը այդ նյութերից բացի, նաև՝ ֆոսֆորով և ծծումբով: Այլ տարրերից ավելի շատ են հանդիպում կալցիումը, կալիումը, կայծքարը, իսկ միկրոտարրերից՝ ստրոնցիումը, բորը, ցինկը, մոլիբդենը, պղինձը, նիկելը: Հենց այդ նյութերն էլ հանդիսա-

### ԱՆՏԱՌԻ ԵՎ ԱՐՏԱՔԻՆ ՄԻՋԱՎԱՅՐԻ ՓՈԽԱԴԱՐՁ ԿԱՊՆ ՈՒ ՓՈԽԱԶԴԵՑՈՒԹՅՈՒՆԸ



նում են կենսագեոքիմիական շրջանառության գլխավոր մասնակիցները, կյանքի հիմնական կառուցողները՝ բիոֆիլները:

Կենսաբանական շրջանառության մեջ ընդգրկված ածխածնի, ազոտի և ջրի նյութափոխանակության ընդհանուր ցիկլը տևում է 300—400 և ոչ ավելի քան 1000 տարի: Թթվածնի շրջանառությունը կենսոլորտում տեղի է ունենում 5 հազար տարում, մթնոլորտի ածխաթթու գազինը (ֆոտոսինթեզի միջոցով)՝ 200 տարվա ընթացքում: Ֆոտոսինթեզի միջոցով համաշխարհային օվկիանոսի ողջ ջրերի քայքայումը տեղի է ունենում 5—6 միլիարդ տարում: Կլիմայական և գեոքիմիական համամոլորակային շրջապտույտները, որոնք ընդգրկում են ամբողջ մթնոլորտը, համաշխարհային օվկիանոսը, հատակային նստվածքների շերտերը և հողմնահարված կեղևը, ծայրահեղորեն դանդաղ են ընթանում՝ հարյուր հազարավոր և միլիոնավոր տարիների ընթացքում:

Սակայն մարդու գործունեության հետևանքով այդ պրոցեսները խիստ արագանում են և տեղի են ունենում ծայրահեղ կարճ ժամանակաշրջանում՝ ընդամենը մի քանի տասնամյակում: Դրա հետևանքները կենսոլորտի համար խիստ բացասական են: Արդյունաբերության և տրանսպորտի բուռն զարգացումը, մարդու ինդուստրիալ գործունեությունը առաջացնում են նյութերի մեծ շրջանառության խախտումներ (անոմալիաներ), որոնք կոչվում են «նեոանոմալիա» կամ «անտրոպոանոմալիա»:

Նեոանոմալիայի հետևանքով տվյալ շրջանում դիտվում է մարդկանց և կենդանիների հիվանդությունների հաճախականության բարձրացում, ոչընչանում են բույսերը: Որքան հեռանում ենք նեոանոմալիայի էպիկենտրոնից, այնքան անտրոպոանոմալիան գնալով թուլանում է և 40—50 կիլոմետրի վրա իսպառ վերանում է: Սակայն ինդուստրիալ խոշոր շրջաններում տեղական նեոանոմալիայի սահմանները ձուլվում են, ձեռք բերում ընդարձակ շրջանների բնույթ: Դրա վառ օրինակը Ռուրի ավազանն է, Արևմուտքի ժամանակակից քաղաք-գիգանտները, դրանց կողմից օդ արտանետվող զանազան վնասակար նյութերը: Ներկայումս միանգամայն ռեալ է դարձել մարդու գործունեության հետևանքով առաջացած անոմալիայի համաշխարհային բնույթ ստանալու վտանգը:

Բնության տարրերի փոխադարձ կապն ու պայմանավորվածությունը խիստ բարդ սիստեմ հանդիսանալով, կարիք է զգում մանրամասն վերլուծության: Մենք կաշխատենք մի քանի զրույցների միջոցով ձեզ որոշակի տեղեկություններ տալ այդ մասին: .

*(Շարունակելի)*

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

Լույս է տեսնում 1928 թվականից



ՊԻՈՆԵՐ 7. 1978 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ





«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—82—72, 58—08—88, 56—14—96:

ՎՖ 04695: Պատվեր 951: Տպաքանակ 54700: Տպ. 3 մամ.: Ստորագրված է տպագրության 22 VI 1978 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:

ԳԻՆԸ 15 Կ.

# ԱՐԱԳԻԼՆԵՐ

ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ

Արարատյան հովտում,
Բարդիների վրա
Դուք ապրում եք խաղաղ, արագիլնե՛ր՝
Կապույտ, կապույտ վերում
Ձեր բները դրած,
Իսկ ներքևում՝ արտեր ու այգիներ:

Ձեր բները հյուսված
Ձեղուններով հույսի

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Օրորվում են ահա ծառերի հետ,
Վերջալույսին գարնան,
Ամռան ցայգալույսին՝
Զրուցում եք դուք ձեր ձագերի հետ:

Դուք գալիս եք հեռվից,
Լայն թևերը փռած՝
Իջնում եք մեր հողում, հանգրվանում,
Մեր ծառերի վրա,
Գմբեթների վրա,
Երկնագմբեթ, ծաղկած Հայաստանում:

Դուք՝ հին բնակիչներ,
Արագիլնե՛ր բարի,
Ճերմակաթև, մաքուր մեր երազներ,
Ձեր աչքերում՝ ձյունն
Շղթան լեռնապարի,
Ե՛վ սևաններ վճիտ, և՛ արագներ...

Ձեղուններից հուշի
Ձեր բներն եք հյուսում,
Հարազատ մեր հողին ու ամպերին,
Հայոց բնակիչնե՛ր,
Արագիլնե՛ր մեր սուրբ,
Ձեր ձայնի մեջ կանչն է մեր պապերի...

ԻՆԴԵՔՍ 77806